

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — **теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԴԵՊԻ XXVII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐ

Կ. ԴԱԼԼԱՔՅԱՆ— *Հոգևոր կյանքի կարևոր ոլորտը* . . . 3
Մ. ՄԿՐՏՉՅԱՆ— *Նոր պահանջների ոգով* . . . 13
Մ. ՉՈՐԲԱՆՅԱՆ— *Արտադրության ինտենսիվացումը և աշխատանքային պոտենցիալի օգտագործումը* . . . 22

ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— *Նոր գիտելիքի ըմբռնումը արդի գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում* . . . 29
Վ. ՎԻՐԱԲՅԱՆ— *Կուսակցությունը և բանվոր դասակարգի ակտիվության բարձրացումը* 36

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՓՈՍՏԻՑ

Մ. ՌԱՋՈՒ, Գ. ՍՈՐՈԿՈ— *«Գործնական խաղերը» կառավարման բնագավառում* . . 44

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՄՇԱԿՈՒՅԹ

Հովհ. ՂԱԶԱՐՅԱՆ— *Դեպի խորքը կեցության* . . . 51
Դ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ— *Ձայն հայրենական* . . . 62
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— *Աթեիզմի տարրերը հայ ժողովրդական բանահյուսության մեջ* . 68

ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀՈՐԻԶՈՆՆԵՐԸ

Լ. ՄԻՐԶՈՅԱՆ— *Աստղերի շարժումներն ու էվոլյուցիան* . . . 73

ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

Մ. ԴԱՆԻԵԼՅԱՆ— *Վարդենիկի կոմունիստները* . . . 81
Ա. ԴԱՎՈՅԱՆ— *Բոլոր հնգամյակների ակտիվ մասնակիցը* . . . 87

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Հր. ՇԱՔԱՐՅԱՆ— *Ուսումնասիրություն առօրեական գիտակցության մասին* . . . 91
Ռ. ԴԱՎԹՅԱՆ— *Հետազոտության կիզակետում բարեկամության ավանդույթներն են* . 94

ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ

НАВСТРЕЧУ XXVII ПАРТСЪЕЗДУ


К. ДАЛЛАКЯН — Важная сфера духовной жизни . . . . . . 3
М. МКРТЧЯН — В свете новых требований . . . . . . 13
М. ЧОБАНЯН — Интенсификация производства и использование трудового потенциала . . . . . . . . . 22


ВОПРОСЫ ТЕОРИИ


А. АРУТЮНЯН — Восприятие нового знания в современной эпохе научно-технической революции . . . . . . . . 29
В. ВИРАБЯН — Партия и повышение активности рабочего класса . . 36


ИЗ РЕДАКЦИОННОЙ ПОЧТЫ


М. РАЗУ, Г. СОРОКО — «Деловые игры» в сфере управления . . . 44


ЛИТЕРАТУРА И КУЛЬТУРА


Ов. КАЗАРЯН — В глубь бытия . . . . . . . . 51
Г. АЙРАПЕТЯН — Голос Отечества . . . . . . . 62
А. АРУТЮНЯН — Элементы атеизма в армянском фольклоре . . . 68


ГОРИЗОНТЫ НАУКИ


Л. МИРЗОЯН — Движения и эволюция звезд . . . . . . 73


ЛЮДИ НАШИХ ДНЕЙ


М. ДАНИЕЛЯН — Коммунисты Варденика . . . . . . . 81
А. ДАВОЯН — Активный участник всех пятилеток . . . . . 87


КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ


Гр. ШАКАРЯН — Исследование об обыденном сознании . . . . 91
Р. ДАВТЯН — В центре исследования — традиции дружбы . . . 94










# ՀՈԳԵՎՈՐ ԿՅԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՈԼՈՐՏԸ


**Կ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար


*Մ*ԵՐ ԵՐԿԻՐԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆ ապրում են զարգացման կարևոր բեկումնային ժամանակաշրջան: Ամենուր տիրում է գործարար, աշխատանքային մթնոլորտ: ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի մշակած՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ծրագիրը, կենսագործունեության բոլոր ոլորտներում ընթացող բարեփոխումները, կուսակցության առաջադրած ստրատեգիական խնդիրների իրականացումը միտող պրակտիկ գործունեությունը այն հուսալի հիմքն են, որի վրա հենվում են ապագայի մեր ծրագրերը:

Ժողովրդական տնտեսության հետագա ինտենսիվացման և գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերն անընդհատ արագացնելու վերաբերյալ կուսակցության կուրսը համապատասխանում է սովետական մարդկանց իղձերին, բխում է նրանց շահերից և ամենուր արժանանում համաժողովրդական հավանության:

Կուսակցության ստրատեգիական նպատակը մարդկանց կենսապայմանների բարելավումն է, որին էլ նպատակամղված են մեր բոլոր խոշոր ծրագրերը: «Այն ամենի նկատմամբ, ինչ վերաբերում է մարդուն, նրա աշխատանքին, նյութական բարեկեցությանն ու հանգստին,— ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— մենք պետք է անսահման ուշադիր լինենք: Դա մեզ համար քաղաքականության հիմնական հարցն է»:

Արդի փուլում կուսակցության առաջադրած բարդ ու բազմաբնույթ խնդիրների լուծումը, բազմաթիվ այլ գործոնների հետ միասին, պայմանավորված է նաև մարդու ինտելեկտուալ պոտենցիալի անընդհատ աճով, նրա գաղափարաքաղաքական հասունությամբ, աշխատանքային և բարոյական բարձր կուլտուրայով: Որքան լայն են իրականացվող վերափոխումների մասշտաբները, որքան բարդ են առաջադրված խնդիրները, այնքան ավելի վճռականորեն առաջին պլան է մղվում մարդկային գործոնի դերը: Ինչպես հայտնի է, սոցիալիզմի կարևորագույն օրինաչափություններից մեկն այն է, որ աճում է սուբյեկտիվ մարդկային գործոնի նշանակությունը հասարակական կյանքում, սոցիալ-տնտեսական և հոգևոր խնդիրների լուծման գործում, աճում է լայն մասսաների գիտակից և ակտիվ մասնակցության դերը հասարակական պրոցեսների նպատակամղված և պլանաչափ կառավարման գործում:

Ինչպես միշտ, այժմ էլ կուսակցությունը երկրի առջև ծառացած խնդիրների լուծման գլխավոր պայմանը համարում է սովետական մարդկանց աշխատանքային ակտիվության ծավալումը: Դաստիարակելով կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը, ձևավորելով ակտիվ կենսադիրք՝ կուսակցությունը լայն հնարավորություններ է ստեղծում մասսաների կենդանի ստեղծագործության համար, որը Վլադիմիր Իլյիչ Լենինը համարում էր որպես հասարակությունը կոմունիստականի վերափոխելու հզոր գործոն: Ահա թե ինչու

առաջադրված կարևոր խնդիրների լուծման համար պահանջվում են ստեղծագործական ուժերի մոբիլիզացում, գործերը նորովի վարելու ունակություն ոչ միայն էկոնոմիկայի, այլև գաղափարախոսական ոլորտում, սոցիալական ու կուլտուրական մարզում, կյանքի բոլոր բնագավառներում։ Այսպիսին է կուսակցության կուրսը արդի փուլում։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ տնտեսական, քաղաքական, կուլտուրական զարգացման, անհատի համակողմանի, ներդաշնակ ձևավորման գործում հսկայական են ակումբային հիմնարկների ու մարզական կառույցների դերը։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Ակումբային հիմնարկների և մարզական կառույցների օգտագործումը բարելավելու միջոցառումների մասին» որոշման մեջ խորությամբ վերլուծված են աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց ազատ ժամանակի կազմակերպման, խելամիտ ապրելակերպի ձևավորման գործում կուլտուրայի և մարզական հիմնարկների դերի բարձրացման ուղիները, զարգացման միտումները։ Այստեղ միաժամանակ նշված է, որ այդ օջախների առկա ծանրակշիռ նյութատեխնիկական բազան դեռևս լիովին չի ծառայում իր նպատակին։ Բավականաչափ ուշադրություն չի նվիրվում գաղափարաքաղաքական դաստիարակությանը, սովետական ապրելակերպի պրոպագանդմանը, բուրժուական գաղափարախոսության մերկացմանը, սպառողական հոգեբանության, կրոնական վերապրուկների հաղթահարմանը, հարբեցողության և մյուս հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարին։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների լույսի ներքո անհրաժեշտ է խորությամբ, ռեալիստորեն իմաստավորել ձեռք բերած ամբողջ դրականը, դասեր առնել թերություններից, ինչպես նաև որոշել կուլտուր-լուսավորական և մասսայական ֆիզկուլտ-կազդուրիչ ողջ աշխատանքի բովանդակությունը, դրա ձևերին ու մեթոդներին ներկայացվող որակապես նոր պահանջները, նախանշել գաղափարախոսական գործունեության այդ տեղամասերի կուսակցական ղեկավարման է՛լ ավելի բարելավման խնդիրները։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումն առաջ քաշեց դաստիարակությունը լայն ճակատով վարելու, այն բոլոր ոլորտները ընդգրկելու խնդիրը, որոնցում ձևավորվում է անհատը։ Անշեղորեն և հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի, ինչպես նաև Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները՝ ՀԿԿ քաղկոմ-շրջկոմները, հանրապետական մինիստրություններն ու գերատեսչությունները, ժողովրդական դեպուտատների սովետներն ակտիվացրել են իրենց գործունեությունը մասսաների քաղաքական, աշխատանքային, բարոյական ու գեղագիտական դաստիարակության, գեղարվեստական ինքնագործունեության զարգացման, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մասսայականացման համար ակումբային հիմնարկությունների ու մարզական կառույցների դերի բարձրացման ասպարեզում։

Հանրապետության քաղաքներում և շրջաններում իրականացվում են հասարակական կյանքի այդ կարևոր ոլորտների կուսակցական ղեկավարումը ուժեղացնելու բազմաթիվ միջոցառումներ։ Վերջին տարիներս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը մի քանի անգամ անդրադարձել են կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքի բարելավման, մասսայական ֆիզկուլտուրայի զարգացման հարցերին։ Մշակվել և կենսագործվում են ակումբային հիմնարկների ղեկավարման և գործունեության կենտրոնացման, կուլտուր-մարզական համալիրների, սպորտի, տուրիզմի զարգացման հեռանկարային պլաններ։

Ակումբային հիմնարկների, մասսայական ֆիզկուլտուրայի զարգացման նկատմամբ կուսակցական-պետական վերաբերմունքի որոշակի փորձ են կուտակել կուսակցության Երևանի, Լենինականի քաղաքային կոմիտեները, Աբովյանի շրջկոմը։ Կուսակցության Երևանի քաղկոմը վերջին մեկ տարվա ընթացքում անդրադարձել է կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեության բարելավման, մարզական կառույցների օգտագործման արդյունավետության բարձրացման հարցերին, մշակել կոնկրետ միջոցառումներ դրանց



նյութատեխնիկական բազայի ամրապնդման, աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման համար։

Կուլտուր-լուսավորական և մասսայական ֆիզկուլտ-կազդուրիչ աշխատանքների բարելավման հարցերը գտնվում են «Հայէլեկտրամեքենա», «Հրազդանմեքենա» արտադրամիավորումների, «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Երևանի ալյումինի գործարանի կուսկազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում։ Նշված և մի շարք այլ հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում մշակույթի և սպորտի օջախներն ու օբյեկտները դարձել են աշխատավորության շրջանում կուսակցական կազմակերպությունների կողմից տարվող քաղդաստիարակչական աշխատանքի հենակետային կենտրոններ։

Ընթացիկ հնգամյակի տարիներին մեր հանրապետությունում սոցիալ-տնտեսական ակնառու նվաճումների ֆոնի վրա շատ բան է արվել աշխատավորների բարեկեցիկ կյանքի ապահովման, նրանց ներդաշնակ ֆիզիկական և հոգևոր զարգացման, ազատ ժամանակի արդյունավետ օգտագործման նպատակով։ Հանրապետության կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, սովետական մարմինները զգալի աշխատանք են կատարել ակումբային հիմնարկների, մարզական կառույցների ցանցի ընդլայնման, նյութատեխնիկական բազայի ամրապնդման նպատակով, միջոցառումներ են մշակել դրանց արդյունավետ օգտագործման համար։ Հնգամյակի տարիներին ակումբային հիմնարկների, մարզական օբյեկտների կառուցման համար տրամադրվել են շուրջ 20 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Հանրապետության քաղաքներում ու շրջաններում շահագործման են հանձնվել մի շարք կուլտուրայի տներ, ակումբներ, մարզական կառույցներ։ Աշխատավորության ժամանցի, ազատ ժամանակի կազմակերպման համար իր դռներն է բացել Երևանի մարզահամերգային համալիրը, որը դարձել է հանրապետության բնակչության հպարտությունը։ Ներկայումս հանրապետությունում գործում են շուրջ 1.250 ակումբ, 27 մարզադաշտ, 64 լողավազան, 1.277 մարզադահլիճ, հազարավոր տարբեր տիպի մարզահրապարակներ։

Կուսակցական ղեկավարման բարելավումը, մի շարք օղակներում պատասխանատվության բարձրացումը հանգեցրել են դրական միտումի՝ ամբողջությամբ վերցրած հանրապետությունում նկատելիորեն աշխուժացել է կուլտուրայի և սպորտի հիմնարկների աշխատանքը, կատարելագործվել են դրա ձևերը, հարստացել ու խորացել բովանդակությունը։

Ապահովել հունիսյան պլենումի պահանջը՝ վերակառուցել գաղափարախոսական աշխատանքի ողջ պրոցեսը բոլոր տեղամասերում, բարձրացնել դրա ներգործունությունը, նշանակում է մեր քաղաքական միջոցառումները հասցեագրել լայն մասսաներին և ոչ թե սահմանափակվել գաղափարական ակտիվի ներսում միայն, փաստորեն միշտ միևնույն մարդկանց միևնույն շրջանակում։ Ահա այն գլխավոր խնդիրը՝ ընդգրկման և՛ լայնություն, և՛ խորություն, որ Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո լուծել սկսեցին մեր գաղափարախոսական հիմնարկները, այդ թվում նաև կուլտուր-լուսավորական օջախները և մարզական կազմակերպությունները։

Մեզանում քիչ չեն կուլտուրայի օջախների լավ աշխատանքի օրինակները։ Այսօր հոգևոր կյանքի մասսայական կենտրոններ են դարձել «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման, Երևանի երկաթուղային հանգույցի, ալյումինի գործարանի կուլտուրայի պալատները, Դիլիջանի, Զարենցավանի քաղաքային, Հոկտեմբերյանի, Մարալիկի շրջանային կուլտուրայի տները։ Նշված և մի շարք այլ կուլտուրայի տներում ու ակումբներում որոնում են մասսայական արդյունավետ աշխատանքի նոր ձևեր, թարմ երանգներ, ինքնագործ կոլեկտիվներում, խմբակներում պարապելու հնարավորություն են տալիս տարբեր տարիքի ու հետաքրքրությունների հազարավոր մարդկանց։

Տարեցտարի ավելի է բարձրանում գեղարվեստական ինքնագործունեության գաղափարագեղարվեստական, կատարողական մակարդակը։ Այժմ հան-

րապետության քաղաքներում և գյուղերում գործում են ավելի քան 7 հազար ինքնագործ կոլեկտիվներ՝ տասնյակ հազարավոր մասնակիցներով։ Զգալի թվով կոլեկտիվներ իրենց ցուցադրած արվեստով գրավում են լայն մասսաների ուշադրությունը ինչպես հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ Գեղարվեստական ինքնագործունեության ավելի քան 160 խմբեր արժանացել են ժողովրդական կոլեկտիվի բարձր կոչման։

Կուլտուր-լուսավորական հիմնարկները դարձել են նաև մասսայական-քաղաքական, ավանդական միջոցառումների, ժողովրդական տոնակատարությունների ակտիվ կազմակերպիչներ։ Նրանց մասնակցությամբ «Երգի», «Ծաղկի», «Բերքի», «Հովվի» և այլ տոներ արդեն դարձել են ավանդական, տարերային հավաքներից վերածվել բարձրաճաշակ ու բարձրարվեստ միջոցառումների։

Երևանցիների նորօրյա կյանքի մեջ անմիջապես առանձնացավ ամենամասսայական ու ամենագրավիչ «Էրեբունի-Երևան» համաքաղաքային տոնահանդեսը։ Հետաքրքրական ու ինքնատիպ են ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությանը նվիրված «Անխախտ Միություն» թատերականացված ներկայացումը Լենինականում, «Աբովյանական օրերը» և «Հավերժ ռուս ժողովրդի հետ» միջոցառումները՝ Աբովյանում, ուսանողական գարունը և քաղաքական երգի փառատոնը՝ Մյասնիկյանի շրջանում։ Եթե այս ամենին ավելացնենք գարնան ու ձմռան տոները, ըստ բնակության վայրի բակերի ու փողոցների մրցույթները, «Որոնում ենք տաղանդներ» փառատոները, ապա հասկանալի են դառնում այն հսկայական ջանքերը, որ կուսակցության շրջկոմների անմիջական ղեկավարությամբ գործադրում են կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողները բնակչության առօրյան հետաքրքրական, իմաստալից ու բազմաբովանդակ դարձնելու համար։

Հանրապետությունում շոշափելի աշխատանք է կատարվել մասսայական ֆիզկուլտուրայի զարգացման, մարզական կառույցների արդյունավետ օգտագործման ասպարեզում։ Հանրապետության ֆիզկուլտուրնիկների ջոկատում ընդգրկված է շուրջ մեկ միլիոն մարդ, ընդհանուր ֆիզիկական պատրաստականության և առողջարարական ավելի քան 9.600 խմբերում պարապում է 34 հազար մարդ, տարբեր սպորտային կարգեր ունեն 257 հազար մարդիկ, 370 հազար մարդ ՊԱՊ համալիրի կրծքանշանակիրներ են։ Յուրաքանչյուր տարի անցկացվում են շուրջ 150 ֆիզկուլտ-կազդուրիչ միջոցառումներ։ Ավանդական է դարձել այնպիսի մասսայական միջոցառումների անցկացումը, ինչպիսիք են՝ «ամբողջ ընտանիքով դեպի մարզադաշտ», «վազորդի օր» և այլն։ Ուսանելի փորձ է կուտակված Կիրովականում մարզական նպատակով բնակելի շենքերի նկուղային հարկերի օգտագործման ասպարեզում։

Մասսայական ֆիզկուլտուրայի զարգացման հարցերի նկատմամբ հոգատար վերաբերմունքի դրական օրինակ են ցույց տալիս Լենինականի և Չարենցավանի կուսակցական կազմակերպություններն ու սովետական մարմինները։ Լենինականում, օրինակ, ֆիզկուլտուրան և սպորտը, տուրիզմը աշխատավորների, երիտասարդության համար դարձել են առօրյա անհրաժեշտություն։ Այստեղ երեխաների ֆիզիկական դաստիարակությունը սկսում են դեռևս մանկապարտեզից։ Այդ աշխատանքը գլխավորում է Լենինականի Մ. Նալբանդյանի անվան մանկավարժական ինստիտուտի ֆիզդաստիարակության ամբիոնը։ Հասարակայնության, շեֆ ձեռնարկությունների ուժերով քաղաքի բոլոր մանկապարտեզներում կառուցվել են մարզահրապարակներ, մանկական լողավազաններ։ Մարզահրապարակների և մարզադաշտերի կառուցման գործում դրական աշխատանքի որոշակի փորձ կա Չարենցավան քաղաքում։ Սպորտային զանազան համալիրներ են կառուցվել Արտաշատի, Մարտունու, Հոկտեմբերյանի, Սպիտակի շրջաններում։ Մարզական-մասսայական աշխատանքի աշխուժացում է նկատվում Ախուրյանի շրջանի Ազատան, Արտաշատի շրջանի Այգեզարդ, Եղեգնաձորի շրջանի Աղավնաձոր, Էջմիածնի շրջանի Ոսկեհատ գյուղերում։

Մի շարք քաղաքներում և շրջաններում ակտիվ աշխատանք է կատարվում կուլտուր-մարզական համալիրներ ստեղծելու նպատակով։ Արդեն ստեղծ-



վել է այդպիսի 80 համալիր։ Կուլտուր-լուսավորական և մարզական-կազդուրիչ աշխատանքի նոր կազմակերպական ձևը, միավորելով ակումբները, գրադարանները, երաժշտական դպրոցները, կինոթատրոնները, մարզական կառույցները, հնարավորություն է տալիս ավելի արդյունավետորեն օգտագործել նյութատեխնիկական և ֆինանսական ռեսուրսները, կադրերի ուժերը, զգալիորեն ընդլայնում է մշակույթի հիմնարկների և մարզական կազմակերպությունների գործունեության ոլորտը, հնարավորություն է ընձեռում անցկացվող միջոցառումներում լայնորեն ընդգրկել բնակչության բոլոր խավերին։

Աբովյանի շրջանում, օրինակ, համալիրը հնարավորություն է ընձեռում անցկացնել ժողովրդական տոնախմբություններ, շրջանային փառատոներ, ստուգատեսներ, կուլտուր-մարզական այլ մասսայական միջոցառումներ, նպաստում է ինքնագործ և սիրողական միավորումների, ըստ հետաքրքրությունների գործող ակումբների ցանցի զարգացմանը, երեխաների ու դեռահասների շրջանում նպատակասլաց աշխատանքի կազմակերպմանը։

Այստեղ կուլտուր-մարզական համալիրը ունի իր օրինակելի թեմատիկ պլանը, կոորդինացիոն խորհուրդը, որն ուղղություն է տալիս շրջանում գեղագիտական և ֆիզիկական դաստիարակության, ազատ ժամանակի կազմակերպման, աշխատավորների աճող կուլտուրական պահանջմունքների բավարարման, մարդկանց առողջության ամրապնդման հարցերով անմիջականորեն զբաղվող կազմակերպությունների գործունեությանը։ Համալիրը օգտագործում է շրջանի մշակույթի, սպորտի, ժողովրդական կրթության նյութական բազաները՝ անկախ դրանց գերատեսչական պատկանելությունից։

ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը Աբովյանի շրջանային կուլտուր-մարզական համալիրի բազայի վրա անցկացրեց հանրապետական սեմինար-խորհրդակցություն, որին մասնակցում էին կուսակցական և սովետական ղեկավար աշխատողներ, կուլտուրայի և սպորտի բնագավառի ներկայացուցիչներ, ակտիվիստներ։ Աբովյանցիների փորձը հիմք է տալիս պնդելու, որ կուլտուր-մարզական համալիրները կուլտուր-լուսավորական և ֆիզկուլտուրային մասսայական աշխատանքի կառավարման ընդունելի ձև են։

Սակայն ամենուրեք չէ, որ գտնված են ակումբային աշխատանքի այնպիսի ձևեր, որոնք արտացոլեն գաղափարաքաղաքական, աշխատանքային, բարոյական, գեղագիտական դաստիարակության հիմնական ուղղությունները։ Ակումբային որոշ հիմնարկներում միջոցառումներ կազմակերպելու փոխարեն ամսվա 26 օրը տրամադրում են միայն կինոդիտումներին։ Զգալիորեն նվազում է տեխնիկական և կիրառական արվեստի խմբակների թիվը, որը 3 անգամ պակաս է միութենական միջին ցուցանիշներից։ Հանրապետության բնակչության միայն 7 տոկոսն է ընդգրկված գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվներում։ Ի դեպ, այդ նույն տոկոսին է մոտենում նաև առողջարարական և ընդհանուր ֆիզիկական պատրաստության խմբերում ընդգրկվածների թիվը։ Ցածր է կազմակերպվող միջոցառումների ընդհանուր մակարդակը։ Հանրապետությունում մեկ ակումբին ընկնող մասսայական միջոցառումների միջին թիվը 2—2,5 անգամ ցածր է ընդհանուր միութենական ցուցանիշից։ Այս բոլորի հետևանքով հետզհետե նվազում է ակումբային հիմնարկների հաճախելիությունը։ Հանրապետությունում այն կազմում է 36,5 տոկոս, իսկ մի շարք շրջաններում ու գյուղերում՝ ավելի ցածր։

Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր գյուղի կուլտուրայի տունը, օրինակ, ունի 700 տեղանոց դահլիճ և զանազան խմբերի գործունեության համար 10 սենյակ։ Սակայն այստեղ ամսական միջին հաշվով անցկացվում է ընդամենը 4 միջոցառում, սենյակներից 6-ը օգտագործվում են այլ նպատակներով։ Համանման պատկեր է Այգեշատ (700 տեղ), Բամբակաշատ (580 տեղ), Հոկտեմբեր (650 տեղ) գյուղերում։ Ամսական միայն 3—6 միջոցառում անցկացնելու դեպքում անգամ նշված դահլիճների հաճախելիությունը չի անցնում 15—30 տոկոսից։ Արտաշատի շրջանի Մխչյան գյուղի 500 տեղանոց դահլիճը միջոցառումների ժամանակ ապահովված է 30 տոկոսով, այդպես է նաև Այգեզարդում (450 տեղ), Քաղցրաշենում (800 տեղ)։

Հանրապետության կուլտուրայի մինիստրության համակարգի ակումբա-

Արժե՞ դրանից հետո զարմանալ, որ ակումբային աշխատողների մի զգալի մասը անգամ հեռավոր պատկերացում չունի իր գործունեության գաղափարախոսական կողմի մասին, մարդկանց վրա գաղափարադաստիարակչական գործունեության ռեալ ներգործության մասին։ Ինչո՞վ բացատրել այս ամենը, ինչո՞ւ երիտասարդ մասնագետներին աշխատանքի չեն ընդունում, ինչո՞ւ տեղերում առանձնակի սրությամբ չեն քննարկվում կուլտուր-լուսավորական բնագավառի աշխատողների պատրաստման, տեղաբաշխման, նրանց որակավորման բարձրացման հետ կապված պրոբլեմները։ Տեղական կուսակցական կազմակերպությունները, սովետների գործադիր կոմիտեները պետք է գործնական քայլեր ձեռնարկեն կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման, նրանց պատրաստման գործում, բարձրացնեն ակումբային աշխատողների հասարակական վարկն ու հեղինակությունը։ Գաղափարախոսական աշխատողների այդ կատեգորիայի թվում շատ քիչ է կոմունիստների տեսակարար կշիռը։ Իսկ կուլտլուսաշխատողների քաղաքական ակտիվության մակարդակով, նրանց կարողությամբ և ստեղծագործական ունակությամբ է մեծապես պայմանավորված կուլտուրայի օջախների գործունեության կատարելագործումը։ Անհրաժեշտ է ակումբները, կուլտուրայի տներն ու պալատները, առանձնապես գյուղական վայրերում, ամրապնդել որակյալ կադրերով, նրանց համար ստեղծել աշխատանքի և կենցաղի նորմալ պայմաններ, հետևողականորեն իրականացնել բարձր որակավորման մասնագետների պատրաստումը հանրապետության բուհերում ու տեխնիկումներում։

Լուրջ թերություններ ու բացթողումներ կան ֆիզկուլտուրային կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում։ Ֆիզիկական կուլտուրայի հայկական պետական ինստիտուտի և Երևանի ֆիզկուլտուրայի տեխնիկումի շատ շրջանավարտներ չեն ամրապնդվում աշխատանքային կոլեկտիվներում։ Լուսավորության մինիստրությունը և հանրապետական սպորտկոմիտեն առայժմ անհրաժեշտ վերահսկողություն չեն սահմանում երիտասարդ մասնագետների աշխատանքի նկատմամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ խնդիր է դրված ապահովել մշակույթի հիմնարկների և մարզական կառույցների համար բարձրագույն կրթությամբ կադրերի պատրաստման համակարգի հետագա կատարելագործումը, ընդլայնել գյուղական երիտասարդության ընդունելությունը կուլտուրայի և ֆիզիկական կուլտուրայի ինստիտուտներում, հիմնականում այնտեղ գործուղել ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կրթաթոշակառուներին։ Այդ խնդրի լուծումը պետք է դառնա համապատասխան մինիստրությունների ամենօրյա հոգսը։

Այսօր հրատապ են դառնում կուլտուր-լուսավորական հիմնարկների, մարզական համալիրների կենտրոնացման խնդիրները հատկապես գյուղական շրջաններում։ Նորովի են ծառանում սոցիալ-կուլտուրական համալիրի ղեկավարումը կատարելագործելու, կուլտուր-լուսավորական աշխատանքի մեթոդիկայի անկատարության հաղթահարման հարցերը։

Սովետական մարդկանց կյանքի նոր պայմանները, մարդկային նոր փոխհարաբերությունները զգալիորեն բարդացնում, որակապես ավելի բարձր ու բազմաբնույթ են դարձնում նրանց հոգևոր պահանջմունքները, արժութային կողմնորոշումները, գեղագիտական ճաշակը։ Եվ ակումբային հիմնարկները, կուլտուր-մարզական համալիրները անսահման հնարավորություններ ունեն զարգացնելու մասսաների ինքնագործունեությունը, գործի դնելու բոլոր ռեզերվները, կոմպլեքսայնորեն ներգործելու անհատի գաղափարաքաղաքական, բարոյական նկարագրի վրա, մարդկանց կյանքի ու գործունեության բոլոր կողմերի վրա, ներառյալ աշխատանքը, ժամանցը, կենցաղը, անձնական հարաբերությունների ոլորտը, ազատ ժամանակի՝ բարոյագեղագիտական տեսակետից լիարժեք օգտագործումը, մի խոսքով նրանց կյանքի ամբողջ ընթացքը։ Ակումբային հիմնարկները, մարզական համալիրները դարձել են տեղերում քաղաքական և հոգևոր կյանքի կենտրոններ, և մեր խնդիրն է՝ ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից է՛լ ավելի ակտիվորեն, է՛լ ավելի արդյունավետորեն օգտագործել դաստիարակչական աշխատանքի այդ լծակները։

# ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՈԳՈՎ

**Մ. ՄԿՐՏՉՅԱՆ**
ՀԿԿ Սովետական շրջկոմի առաջին քարտուղար

ԸՆԹԱՑԻԿ ՏԱՐՎԱ ՀՈՒՆԻՍ ԱՄՍԻՆ կուսշրջկոմի հերթա-
կան պլենումում քննարկում էինք ՍՄԿԿ Կենտկոմի
1985 թ. ապրիլյան պլենումի արդյունքները և շրջանի կուսկազմակերպության
խնդիրները։ Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մաս-
նակցեց նաև կաշվե գալանտերեայի ֆաբրիկայի բանվորուհի, կոմունիստ
Գայանե Մելքոնյանը։ Նրա ելույթը գործնական հարցեր էր շոշափում և, բնա-
կանաբար, արժանացավ պլենումի մասնակիցների ուշադրությանը։ Խոսելով
ձեռնարկության և իրենց բրիգադի հաջողությունների մասին՝ առաջավոր
բանվորուհին ասաց, որ դրանք առաջին հերթին արդյունք են մարդու նկատ-
մամբ հանդես բերվող հոգատարության. բանվորների համար ֆաբրիկայում
ստեղծվել են աշխատանքի ու հանգստի բոլոր պայմանները, կուսակցական,
արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները դիրեկցիայի հետ
միասին որոշակի աշխատանք են տանում արտադրության կուլտուրայի բարձ-
րացման, աշխատանքային պայմանների բարելավման համար։ Նա համոզիչ
օրինակներ բերեց այն մասին, թե ֆաբրիկայում քաղաքական աշխատանքը
ինչպես է շաղկապվում տնտեսական խնդիրների հետ, ծառայում դրանց լուծ-
մանը։ Արդյունքում՝ աշխատանքի արտադրողականության նկատելի աճը և
թողարկվող արտադրանքի բարձր որակը։ Հատկանշականն այն է, որ բան-
վորուհու ողջ ելույթը բխում էր ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի նոր
պահանջների ոգուց և արտահայտում էր կոմունիստների հաստատակամու-
թյունը դրանք անշեղորեն կատարելու համար։

Իրոք, կաշվե գալանտերեայի ֆաբրիկան մեր շրջանի այն առաջավոր
ձեռնարկություններից է, որտեղ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որո-
շումները լայն արձագանք գտան կոմունիստների, ողջ բանվորության շրջա-
նում։ Այստեղ մարդիկ աշխատում են նորովի, ոգևորությամբ, հաջողությամբ
լուծում տնտեսական և սոցիալական զարգացման խնդիրները։ Կուսկազմա-
կերպության ու դիրեկցիայի ջանքերով կոլեկտիվում ստեղծվել են բարոյահո-
գեբանական առողջ մթնոլորտ, սոցիալական և տնտեսական առաջընթացի
կայուն նախադրյալներ, գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչա-
կան արդյունավետ աշխատանքի ծավալման լավ պայմաններ։

Ձեռնարկությունն ընթանում է վերելքի ուղիով։ Նրա կոլեկտիվը 42
եռամսյակ անընդմեջ արտադրական բարձր ցուցանիշների համար հաղթող է
ճանաչվում թեթև արդյունաբերության համակարգի ձեռնարկությունների միջև
ծավալված հանրապետական ու միութենական սոցիալիստական մրցությու-
նում։ Ֆաբրիկան հունիսի 6-ին զեկուցեց տասնմեկերորդ հնգամյակի ծրագիրը
կատարելու մասին։

Հաջողության գործոնները բազմազան են։ Շատ կարևոր է, օրինակ, ար-
տադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումը։ Ֆաբ-
րիկան սերտ կապեր է հաստատել Մինսկի կաշվե գալանտերեայի արտադրու-
թյան փորձնական-կոնստրուկտորական տեխնիկական բյուրոյի և կաշվի գա-
լանտերեայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հետ։

բոլոր միջոցները՝ մենք ընդհանրացնում ենք գիտատեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզի ուսանելի փորձը, ժամանակին բացահայտում նաև այն թերությունները ու դժվարությունները, որոնք ծագում են նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման պրոցեսում, կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրում այն բոլոր խոչընդոտների հաղթահարման վրա, որոնք արգելակում են տնտեսական ու տեխնիկական առաջընթացը։ Մենք խրախուսում ենք ներքին օղակներում ծնունդ առած բոլոր նախաձեռնությունները, որոնք այս կամ այն չափով նպաստում են գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը։ Այսպես, մեխանիկական գործարանի հավաքման արտադրամասում հստակ պատկերացում չկար կոմպլեկտավորվող դետալների քանակի վերաբերյալ։ Դրանք մեծ քանակությամբ ու տեսականիով օգտագործվում են արտադրանքի վերջնական պատրաստման փուլում։ Գործարանի ծրագրավորող ինժեներ, ՍՄԿԿ անդամ Արտավազդ Թորոսյանի առաջարկով ներդրվեց հատուկ հաշվիչ սարքավորում, որը հնարավորություն է ընձեռում մի քանի վայրկյանում պատկերացում կազմելու պահեստավորվող դետալների մասին։ Արտադրամասի կուսխումբը 1984 թ. դեկտեմբերին իր հերթական ժողովում անդրադարձավ այդ հարցին, բարձր գնահատեց Ա. Թորոսյանի աշխատանքը, զգալի ջանքեր գործադրեց այն պրոպագանդելու և ներդնելու համար։ Վերջերս շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում մեխանիկական գործարանի այդ դրական փորձի տարածման վերաբերյալ հարցի քննարկման ժամանակ նշվեց, որ ինչպես հավաքման արտադրամասի, այնպես էլ ողջ գործարանի ձեռք բերած հաջողությունները արդյունք են նաև դրա գաղափարախոսական և սոցիալական ապահովման։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների շուրջ լուրջ խոսակցություն ծավալվեց ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի արդյունքների և շրջանի կուսկազմակերպության խնդիրների քննարկմանը նվիրված պլենումում, այնպես էլ հենց այդ պրոբլեմի առնչությամբ կուսշրջկոմում հրավիրված խորհրդակցությունում։ Մենք ընդհանրացրինք այդ գործում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կատարած դրական աշխատանքը և միաժամանակ բացահայտեցինք տեղ գտած թերությունները։ Շրջկոմի արդյունաբերության բաժնի ուսումնասիրություններից պարզվել է, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում կան լուրջ թերացումներ։ Բանն այն է, որ ձեռնարկությունների մի մասը չի կատարում նոր տեխնիկայի ներդրման պլանը, չի նորացնում հիմնական ֆոնդերը։ «Հայարդկապ», «Արագած», տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորումների, մեխանիկական, «Սպորտ» գործարաններում դեռ այսօր էլ կան մեծ քանակությամբ հնացած, ինչպես նաև ցածր արտադրողականությամբ հաստոցներ ու սարքավորումներ, որոնք արգելակում են աշխատանքի արտադրողականության աճը և արտադրանքի որակի կատարելագործումը։ Մինչդեռ կուսկազմակերպություններն անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում դրանց նորացման ու տեխնիկական վերականգնման հարցերին, հանդես չեն բերում նախաձեռնություն արտադրության տեխնիկական վերազինման գործում, չեն բարձրացնում այդ գործով զբաղվող կոմունիստների, ղեկավարների ու մասնագետների պատասխանատվությունը։ Առանձին ձեռնարկությունների ղեկավարներ հերթափոխայնության գործակցի բարձրացման պրոբլեմը լուծելու նպատակով առաջարկում են ավելացնել հաստոցասարքավորումներն սպասարկող անձնակազմի թվաքանակը։ Ճիշտ է, այդ պրոբլեմը պետք է լուծել։ Բայց ի՞նչ ուղիով։ Առաջին հերթին՝ մասնագիտությունների ու աշխատանքների համատեղման, բազմահաստոցային սպասարկման զարգացման և, որ գլխավորն է, ցածրարտադրողական սարքավորումները արտադրությունից հանելու և բարձրարտադրողական մեքենաների արդյունավետ օգտագործման միջոցով։ Ավելին, տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորումում, հիդրոապարատների գործարանում և այլ ձեռնարկություններում ծայրաստիճան անարդյունավետ են օգտագործում հատուկ սարքավորումները, թվածրագրային կառավարմամբ հաստոցները։ Միջին հաշվով դրանք հերթափոխում գործում են 2—3 ժամ։ Եվ, ահա, միայն արտադրակարողությունների



օգտագործման ցածր մակարդակի հետևանքով շրջանում տարեկան պայմանականորեն պակաս է արտադրվում 350—400 հազար ռուբլու արտադրանք։

Այդ թերությունները և թերացումները վերացնելու ու կանխելու նպատակով զանազան հարցեր ենք քննարկել շրջկոմի բյուրոյի նիստերում, զրույցներ անցկացրել ձեռնարկությունների ղեկավարների հետ։ Արտադրության ինտենսիվացման հնարավորությունները լավագույնս օգտագործելու նպատակով միջոցառումներ ենք մշակել գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված խորհրդակցությունում։ Կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրել ենք գիտության և արտադրության կապերի ամրապնդման, արտադրության տեխնիկական վերազինման և ինտենսիվացման նկատմամբ կուսակցական վերահսկողությունն ու ղեկավարությունը ուժեղացնելու խնդիրների վրա։ Տեխնիկական առաջընթացի արագացման գործում կարգուկանոն ստեղծելու նպատակով գործնական օգնություն ենք ցույց տալիս հիդրոապարատների գործարանի ղեկավարությանն ու կուսկազմակերպությանը։ Այն արդյունավետ դարձնելու համար մոբիլիզացրել ենք նաև «Ալմաստ» գործարանի առաջատար մասնագետներին։

Ներկա փուլում երկրի առջև ծառացած բարդ ու մասշտաբային խնդիրների լուծման, կուսակցության նոր պահանջների կատարման հիմնական պայմանը ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը համարեց կազմակերպվածության բարձրացումը, բոլոր օղակներում կարգապահության ամրապնդումը, կարգուկանոնի հաստատումը։ Այդ, նախ և առաջ, նշանակում է, որ յուրաքանչյուր աշխատատեղում, բոլոր բնագավառներում մարդիկ պիտի գործին վերաբերվեն ամենայն բարեխղճությամբ, լիովին օգտագործեն ունեցած հնարավորություններն ու ռեզերվները։ Արտադրության համաչափության ապահովմամբ և կորուստների կրճատմամբ շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում էապես նվազել են աշխատաժամանակի անհարկի կորուստները, պարապուրդները, արտաժամյա աշխատանքը։ Նորից անդրադառնանք այդ նույն կաշվե գալանտերեայի ֆաբրիկային։ Այստեղ դիրեկցիայի, կուսբյուրոյի, արհկոմի և ԼԿԵՄ կոմիտեի ջանքերով նվազագույնի են հասցվել ուշացումները, գործալքումները, անհարգելի բացակայությունը, հոսունությունը։ 1981 թվականի համեմատությամբ աշխատաժամանակի կորուստները կրճատվել են գրեթե երեք, հոսունությունը՝ 4,5 անգամ։ Ի՞նչ է արվել դրա համար։ Կարգուկանոնը խախտողների նկատմամբ կիրառվում են բարոյական և նյութական ներգործության միջոցներ։ Օրվա ուշացողների անունները հաղորդվում են ֆաբրիկայի ներքին ռադիոյանցով, կուսբյուրոյի և արհկոմի որոշմամբ և դիրեկցիայի հրամանով սահմանվել է ակտիվիստների հերթապահություն։ Ստուգվում ու հաշվի են առնվում ուշացման և գործալքման դեպքերը։ Եթե որևէ մեկը ամսվա ընթացքում երեք անգամ անհարգելի ուշանում է, ապա զրկվում է տվյալ ամսվա պարգև-հավելումից, այդ առթիվ հրամանը փակցվում է ի տես բոլորի։ Եվ բնավ զարմանալի չէ, որ ֆաբրիկան ամբողջությամբ և նրա բոլոր օղակներն աշխատում են համաչափորեն, կատարում ու գերակատարում են ամենօրյա արտադրական առաջադրանքները։

Ցավոք, մեզ դեռևս չի հաջողվել ամենուրեք հաստատել անհրաժեշտ կարգուկանոն, ըստ ամենայնի ամրապնդել կարգապահությունը։ Տնտեսական ղեկավարների անպատասխանատվության, գործի անբավարար կազմակերպման, կուսկազմակերպությունների թույլ հսկողության հետևանքով որոշ արտադրական կոլեկտիվներ ետ են մնում, դոփում տեղում։ Հիդրոապարատների գործարանը (դիրեկտոր՝ Ս. Սնխչյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Լ. Ավագյան), օրինակ, ձախողում է արտադրանքի իրացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանների կատարումը։ «Հայարդկապ» արտադրամիավորման առանձին արտադրամասեր թեև կատարում են պլանները, սակայն չեն ապահովում անհրաժեշտ տեսականու թողարկումը, որի պատճառով հնարավոր չէ հավաքել և վերջնական տեսքի բերել պատրաստի արտադրանքը։ Տրանսպորտային ձեռնարկությունների (№ 4, № 6) ղեկավարները պլանների թերակատարումը փորձում են հիմնավորել «օբյեկտիվ» պատճառներով, մինչ-







դեռ տասնյակ ավտոմեքենաներ մատնված են անգործության։ Նրանք չեն հոգում նաև կոլեկտիվի անդամների աշխատանքի և հանգստի պայմանների բարելավման մասին, թեև դրա համար ունեն ոչ վատ հնարավորություններ։

ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, արտադրության արդյունավետության բարձրացումը դիտելով որպես առաջնահերթ խնդիր, աշխատավորության ուժերը նպատակաուղղում են այն բանին, որ արտադրության արդյունքներն աճեն ավելի արագ, քան դրանց վրա կատարված ծախսը։ Այս իմաստով հսկայական ռեզերվ է խնայողությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը դա համարեց պատասխանատվության և կարգապահության հարցի կարևոր կողմը։ Ահա թե ինչու շրջանի ձեռնարկություններում լայն պայքար է ծավալվել խնայողության, արտադրական հզորությունները, հումքը, էլեկտրաէներգիան լավագույն ձևով օգտագործելու համար։ Այդ գործը լավ է կազմակերպված հատկապես «Հայարդկապ» արտադրամիավորումում։ Այստեղ ընթացիկ տարվա ապրիլին անցկացված խնայողության միամսյակում աչքի ընկավ փորձնական արտադրամասի մոնտաժողների բրիգադը, որը ղեկավարում է ՍՄԿԿ անդամ Ռոբերտ Վարդանյանը։ Նրանք այդ ընթացքում խնայեցին մեծ քանակությամբ հումք ու էլեկտրաէներգիա։ Բրիգադի օրինակով միավորման բոլոր մոնտաժողները խստորեն հետևում են, որ զոդիչները անտեղի չմիացվեն հոսանքին, չծախսվեն նախատեսվածից ավելի անագ, արծաթապատ լարեր և այլն։ Հնգամյակի անցած ժամանակաշրջանում շրջանի հիմնարկ-ձեռնարկություններում տնտեսվել են 6,08 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 852,7 տոննա սև և գունավոր մետաղ, 2.782 տոննա պայմանական վառելիք։ Խնայողության հարցերը դառնում են կուսժողովների քննարկման առարկա, պրոպագանդվում բանավոր և դիտողական ագիտացիայի միջոցներով։

Հիմնարկ-ձեռնարկություններում լայն արձագանք է գտել «Փառք ու պատիվ՝ ըստ աշխատանքի» նշանաբանով շարժումը, որն առավել արդյունավետ է այն կոլեկտիվներում, որտեղ աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման, պարապուրդների և ոչ արտադրական կորուստների կրճատման նպատակով ծավալված քաղաքական-մասսայական ակտիվ գործունեությունը միաձուլվում է աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրության կազմակերպման հետ։ Այս ամենի շնորհիվ աշխատաժամանակի կորուստները շրջանում զգալիորեն կրճատվել են։

Այս բնագավառում, սակայն, կան նաև լուրջ թերություններ։ Առանձին ձեռնարկություններում դեռևս ցածր է մետաղի օգտագործման գործակիցը։ Մեր ուսումնասիրություններից պարզվել է, որ այսօր էլ թողարկվում են այնպիսի արտադրատեսակներ, որոնք չեն համապատասխանում ժամանակակից պահանջներին, շատ դեպքերում հարկ է զգացվում կատարել նյութական և աշխատանքային լրացուցիչ ծախսումներ։ Մեծ չափերի են հասնում էլեկտրաէներգիայի շռայլումները։ Տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորումում դրա գերածախսը կազմել է 62.900 կվտ-ժամ։ Նյութաէներգետիկ ռեսուրսների գերածախս են տվել հացի № 5, շամպայն գինիների գործարանները, աղի կոմբինատը և մի քանի այլ ձեռնարկություններ։

Թույլ կարգապահության ու անպատասխանատվության հետևանք չէ՞, արդյոք, որ շատ հաճախ վատ է օգտագործվում տրանսպորտը, հատկապես երկաթուղային, որի համար հիմնարկ-ձեռնարկություններն ստիպված զգալի տուգանքներ են վճարում։ Ասածս հիմնավորեմ մեկ-երկու օրինակով։ Աղի կոմբինատը այս տարի տվել է 3.405 ժամ գերնորմատիվային պարապուրդ և վճարել 3.604 ռուբլու տուգանք։ Շամպայն գինիների գործարանը յուրօրինակ ռեկորդ է սահմանել. պարապուրդը՝ 10.039 ժամ, տուգանքը՝ 21.187 ռուբլի։ Զգալի տուգանքներ են վճարել նաև հուշարձանների վերականգնման վարչությունը, քանդակագործական կոմբինատը։ Այստեղ են ասել՝ մեկնաբանությունն ավելորդ է։ Այդ խնդիրների շուրջ մենք լուրջ խոսակցություն ենք ունեցել համապատասխան հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների և կուսկազմակերպությունների քարտուղարների հետ, նրանց ուշադրությունը



հրավիրել բացահայտած թերությունների վերացման, աշխատանքի հստակ կազմակերպման, ունեցած ռեզերվների խելամիտ օգտագործման վրա։

Կուսակցության առաջադրած խնդիրների իրականացման համար պահանջվում է արտադրողական ուժերի բնագավառում ապահովել խոր, որակական տեղաշարժեր, վճռական շրջադարձ կատարել դեպի արտադրության ինտենսիֆիկացումը։ Այդպիսի անցման հիմքը միասնական տեխնիկական քաղաքականության վարումն է, որը ենթադրում է կոմպլեքսային միջոցառումներ։ Այս առնչությամբ խոսենք մի կոնկրետ խնդրի շուրջ։ Կուսակցությունն անչափ կարևորում է ժողովրդական սպառման առարկաների թողարկման ավելացումը։ Խնդիր է դրվում էապես մեծացնել դրանց տեսակարար կշիռը ընդհանուր արտադրանքում։ Մեր շրջանում աշխատավարձի ֆոնդի մեկ ռուբլու հաշվով այդ ապրանքների թողարկման ծավալը կազմում էր 80 կոպեկ։ Կուսշրջկոմի կազմած հատուկ հանձնաժողովը գտավ, որ այս ասպարեզում դեռևս կան չօգտագործված ռեզերվներ։ Այդ հարցը գործարար կերպով քննարկեցինք շրջկոմի բյուրոյի ընդլայնված նիստում և խնդիր դրեցինք ձեռնարկությունների ու գիտահետազոտական հիմնարկների ղեկավարության ու կուսկազմակերպությունների առջև՝ ոչ միայն ավելացնել ժողովրդական սպառման ապրանքների թողարկումն ու ընդլայնել տեսականին, այլև էապես բարելավել դրանց որակը։ Այդ խնդրին էր նվիրված նաև գիտագործնական այն կոնֆերանսը, որ շրջկոմն անցկացրեց 1984 թվականին ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության մասնագետների հետ համատեղ։ Դա շատ օգտավետ միջոցառում էր։ Կոնֆերանսի հանձնարարականներով կազմեցինք ժողովրդական սպառման առարկաների արտադրության արդյունավետության բարձրացման հատուկ ծրագիր, նախատեսեցինք յուրաքանչյուր ձեռնարկության անելիքն այդ գործում։ Անհրաժեշտ գտանք ստեղծել դիրեկտորների կոորդինացիոն խորհուրդ։ Որոշեցինք նաև այդ խորհրդի գործունեության շրջանակները։ Դիրեկտորների խորհրդի ջանքերով հաստատվեց արդյունաբերական ձեռնարկությունների ակտիվ համագործակցություն՝ արտադրական թափոններն ու տարողություններն առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործելու, կոոպերացման սկզբունքներով նոր տեսակի ապրանքներ թողարկելու ասպարեզում։

Այդ գործի բարելավման շահերից էր բխում նաև արդյունաբերական ձեռնարկությունների և գիտահետազոտական հիմնարկների սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցությունը։ Այստեղ արծարծվեցին ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացման, դրանց որակի բարելավման գործում կոմունիստների խնդիրները, ընդհանրացվեց ուսանելի փորձը։ Հատկապես մեծ ուշադրության արժանացավ «Ալմաստ» արտադրամիավորումում կատարվող աշխատանքը։

Մեր պրակտիկայում լայնորեն կիրառվող գիտատեսական և գիտագործնական կոնֆերանսները, սեմինար-խորհրդակցություններն ու «կլոր սեղան» հանդիպումները մեծապես նպաստում են շրջանում տեխնիկատնտեսական միասնական մտածողության ձևավորմանը, խթանում սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման նպատակով տարվող աշխատանքների կոորդինացումն ու ղեկավարումը։

ՄԵՐ ՄԱՐԴԻԿ ՔԱՋ ԳԻՏԱԿՑՈՒՄ ԵՆ, որ արտադրության մեջ կարգ ու կանոնի հաստատումը, կարգապահության ամրապնդումը կարճատև կամպանիա չէ, մանավանդ, որ այս բնագավառում մենք դեռևս շատ անելիքներ ունենք։ Շրջանի կուսկազմակերպություններն այս հարցերը պահում են իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում։ Դրանք մշտապես գտնվում են նաև կուսշրջկոմի տեսադաշտում։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը նշեց, որ առանց ամուր կարգապահության ու հաստատուն կարգուկանոնի հնարավոր չէ լուծել տնտեսական ու սոցիալական զարգացման ոչ մի խնդիր, ռացիոնալ ու խնայողաբար օգտագործել նյութական ու վառելիքաէներգետիկ ռեսուրսները, հետևողականորեն իրականացնել գիտատեխնիկական առաջընթացի միջոցառումները։ Իսկ ի՞նչ է արվում շրջանում կարգապահությունն ամրապնդելու,

կարգուկանոն հաստատելու, մարդկանց պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Շրջկոմի բյուրոյում պարբերաբար քննարկում ենք այդ խնդիրներին առնչվող հարցեր, ընդհանրացնում ուսանելին ու լավը, բացահայտում թերությունները, նշում դրանց վերացման միջոցները։ Այսպես, այս տարվա մարտին բյուրոյի նիստում, համակողմանի ուսումնասիրությունից հետո, գործարար կերպով քննարկվեց «Կոլեկտիվի գաղափարաքաղաքական դաստիարակության գործում ղեկավար կադրերի և ինժեներատեխնիկական աշխատողների մասնակցության ապահովման, բարձրարտադրողական սարքավորումների ներդրման, խնայողության ռեժիմի կիրառման, հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ասպարեզում «Ալմաստ» արտադրամիավորման կուսբյուրոյի կատարած աշխատանքի մասին» հարցը։ Պարզվեց, որ 230 ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողներից 210-ը կատարում են հասարակական հանձնարարություններ, ակտիվորեն մասնակցում գաղափարադաստիարակչական գործունեությանը, իրենց նպաստը բերում տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծմանը։ Կուսբյուրոն սերտորեն միահյուսում է գաղափարադաստիարակչական, կազմակերպչական ու տնտեսական աշխատանքը։ Բացահայտվեցին նաև զգալի թերություններ։ Այդ գործում արմատական բեկում մտցնելու նպատակով բյուրոն ընդունեց համապատասխան որոշում։

Պարբերաբար կազմակերպում ենք շրջանի ղեկավար աշխատողների հանդիպումներ տեղերում, ծանոթանում հիմնարկ-ձեռնարկությունների հոգսերին, լուծման կարոտ խնդիրներին և ցույց տալիս անհրաժեշտ օգնություն։ Ամեն ամսվա սկզբին ղեկավար կադրերին հրավիրում ենք կուսշրջկոմ, լսում նրանց պահանջները, ամփոփում կատարած աշխատանքի արդյունքները, տալիս համապատասխան հանձնարարություններ։ Կիրառում ենք նաև առանձին կոմունիստների հաշվետվությունների ունկնդրման պրակտիկան, մշտական հսկողություն ենք սահմանում ընդունած որոշումների և տրված հանձնարարությունների կատարման նկատմամբ։ Այդ գործում արդյունավետորեն ենք օգտագործում շրջկոմի հրահանգիչների ուժերը։ Նրանք հաճախակի լինում են տեղերում, ծանոթանում իրավիճակին և արդյունքների մասին զեկուցում շրջկոմի քարտուղարներին։ Շատ հարցերի քննարկման անհրաժեշտությունն առաջացել է նրանց ուսումնասիրությունների հիման վրա։ Հատկապես ուժեղացրել ենք հսկողությունը կապիտալ շինարարության նկատմամբ։ Կառուցվող յուրաքանչյուր օբյեկտի համար պատասխանատու ենք դարձրել շրջկոմի և շրջսովետի գործկոմի ղեկավար կադրերին։ Պարբերաբար շրջկոմում հրավիրում ենք շինարարական կազմակերպությունների և արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների ու կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություններ, լուծում դրանցում առաջ քաշվող հարցերը։

Կարգապահության ամրապնդման, կարգուկանոնի հաստատման, կոմունիստների ակտիվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի կենդանի շփումը։ Ընդունված կարգ է՝ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին հաճախ հրավիրում ենք շրջկոմ։ Նրանք մասնակցում են պլենումներին ու ակտիվի ժողովներին, բյուրոյի նիստերին ու զանազան խորհրդակցություններին, սեմինար պարապմունքներին, բաժիններում զանազան հարցերի քննարկումներին և այլն։ Իսկ կուսակցական ստորին օղակների կադրե՞րը, չէ՞ որ նրանք ավելի մոտ են կանգնած մասսաներին, ավելի քաջատեղյակ են ձեռնարկության, կոլեկտիվի անդամների հոգսերին։ Եվ մենք մտածեցինք՝ կուսխմբերի կազմակերպիչներին, արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարներին նույնպես հրավիրել շրջկոմ, մտքեր փոխանակել նրանց հետ։ Այդ օղակներում շատ հաճախ քննարկվում և բարձրացվում են կոլեկտիվի համար կենսական նշանակության բազմաբնույթ հարցեր, որոնց հարկավոր է հաղորդակից լինել և օգնել լուծելու դրանք։ Շրջկոմում կազմակերպած հանդիպումների ժամանակ կուսխմբերի կազմակերպիչները և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարները խոսում են իրենց հոգսերի մասին, առաջ քաշում կենցաղային և տրանսպորտային սպասարկման, աշխատանքի պայմանների բարելավման և այլ խնդիրներ, որոնք մենք հաշվի ենք առնում և հանձնարարում համապատասխան կազմակերպություններին՝ լուծելու դրանք։



ՕՐ-ՕՐԻ ՄՈՏԵՆՈՒՄ Է ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ հրավիրման ժամանակը։ Ինչպես ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը, համագումարի նախապատրաստման ընթացքը կլինի քաղաքական, տնտեսական, կազմակերպչական, գաղափարախոսական լարված ու բազմազան աշխատանքի ժամանակաշրջան։ Մեր շրջանի աշխատավորական կոլեկտիվները նույնպես ձգտում են արժանավայել գործերով դիմավորել կուսակցության համաժողովը։ Նրանք գործարար սոցիալիստական մրցություն են ծավալել ի պատիվ XXVII համագումարի և պայքարում են տասնմեկերորդ հնգամյակի ծրագիրը ժամկետից շուտ կատարելու համար։ Վերջերս կուսշրջկոմի բյուրոն հավանություն տվեց «ՍՄԿԿ XXVII համագումարին՝ 27 հարվածային շաբաթ» նշանաբանով սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ շրջանի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնությանը։ Այդ կապակցությամբ բարձր պարտավորություններ են ստանձնել հատկապես կաշվե գալանտերեայի ֆաբրիկայի, «Ալմաստ», կաբելային արդյունաբերության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի փորձնական գործարանները։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումները մեզ համար գործողության մարտական ծրագիր են։ Շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները հետայսու ևս հետևողական աշխատանք կծավալեն շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրները հաջողությամբ լուծելու, գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական և կազմակերպչական ողջ աշխատանքը կնպատակամղեն պլենումի որոշումների անշեղ կենսագործմանը, արտադրության ինտենսիվացման վերաբերյալ կուսակցության պահանջների կատարմանը։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՊՈՏԵՆՑԻԱԼԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

**Մ. ՉՈԲԱՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆ իր զարգացման ճանապարհին առաջադրում և լուծում է բազմապիսի խնդիրներ, որոնք, ունենալով առանձնահատուկ բնույթ, միաժամանակ հանդիսանում են ընդհանուր տնտեսական ստրատեգիայի օղակներ։ Վ. Ի. Լենինը, վերլուծելով ու հիմնավորելով տնտեսական և պետական շինարարության հիմնական խնդիրները, նշել է. «Հարկավոր է կարողանալ յուրաքանչյուր առանձնահատուկ պահին գտնել շղթայի այն հատուկ օղակը, որից պետք է ամբողջ ուժով բռնել՝ ամբողջ շղթան ձեռքին պահելու և հաջորդ օղակին անցնելը հաստատուն կերպով նախապատրաստելու համար...» (ԵԼԺ, հ. 35, էջ 253)։

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման արդի փուլում այդպիսի օղակ է էկոնոմիկայի ինտենսիվացումը, որն ընդգրկում է սոցիալ-տնտեսական խնդիրների մի ամբողջ համակարգ։ Գիտատեխնիկական առաջադիմության արագացման հարցերին նվիրված խորհրդակցությունում ընկեր Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Խոսքը վերաբերում է մեր զարգացման նոր որակին, արագ առաջընթացին ստրատեգիապես կարևոր ուղղություններում, արտադրության կառուցվածքային վերանայմանը, ինտենսիվ ռելսերի, կառավարման արդյունավետ ձևերի անցնելուն»։ Տեխնիկական ինվեստիցիոն և կառուցվածքային քաղաքականության իրականացման ընթացքում գլխավոր շեշտը դրվում է ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, ռեսուրսների տնտեսման, արտադրանքի որակի կտրուկ բարձրացման վրա։ Նվազագույն ծախսումներով ավելի բարձր բնագծեր նվաճելու խնդիրը կուսակցությունը համարում է տնտեսական, քաղաքական խնդիր։ Դրա հիմնավոր ու արագ լուծման ուղիներից են արտադրական, գիտատեխնիկական և աշխատանքային պոտենցիալի, նյութական և մյուս ռեսուրսների արդյունավետ օգտագործումը, արտադրական պրոցեսների ու աշխատանքի ռացիոնալացումը, դրանց ինտենսիվության բարձրացումը։ Ընդ որում այդ ամենը նույն միասնական շղթայի օրգանական մասերն են, որոնց լուծումը պահանջում է կոմպլեքսային մոտեցում։

Նշելով տնտեսական շինարարության բնագավառում աշխատանքի արտադրողականության բարձրացման առանձնահատուկ դերը, Վ. Ի. Լենինը շեշտել է, որ այն, «...նախ և առաջ պահանջում է ապահովել խոշոր ինդուստրիայի նյութական հիմքը՝ զարգացնել վառելանյութի, երկաթի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության արտադրությունը...։ Այդ բնական հարստությունների մշակումը նորագույն տեխնիկայի եղանակներով հիմք կհանդիսանա արտադրողական ուժերի չտեսնված առաջադիմության համար» (ԵԼԺ, հ. 36, էջ 231)։

Երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի շրջանակներում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի հաստատուն զարգացումը լենինյան գաղափարների իսկական մարմնացումն է, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի ստեղծարար գործունեության արգասիքը։ Մեր հանրապետությունում ստեղծվել են ժամանակակից հզոր էներգետիկ բազա, բազմաճյուղ զարգացած արդյունաբերություն, գյուղատնտեսություն, շինարարական ինդուստրիա։ Մեծ ուշադրություն է դարձվում հասարակական արտադրության կառուցվածքի կատարելագործմանը, արտադրության ու աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, արտադրաուժերի տեղաբաշխման բարելավմանը։



Հանրապետության արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը վերջին տարիներին հնարավորություն է ընձեռել ապահովել էկոնոմիկայի աճի կայուն ու բարձր տեմպեր։ 1971—1983 թվականներին հասարակական ամբողջական արդյունքն ավելացել է 2,3, արտադրված ազգային եկամուտը՝ 2,5, հիմնական արտադրական ֆոնդերը՝ 2,8 անգամ։ Նշված ժամանակաշրջանում հանրապետության արդյունաբերության արտադրանքն աճել է 2,5, այդ թվում՝ սպառման առարկաների արտադրությունը՝ 2,7 անգամ։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը միջին տարեկան հաշվարկով, 1961—1965 թվականների համեմատությամբ, 1976—1980 թվականներին ավելացել է 1,8, 1981—1983 թվականներին՝ ավելի քան երկու անգամ։ Այժմ տարեկան միջին հաշվով գործարկվում են մեկ մլրդ ռուբլու հիմնական արտադրական և ոչ արտադրական ֆոնդեր, բազմաթիվ բնակելի տներ, դպրոցներ, հիվանդանոցներ, սոցիալ-կուլտուրական նշանակության այլ օբյեկտներ։

Հանրապետության էկոնոմիկայում տեղի ունեցող կառուցվածքային տեղաշարժերը, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների ներդրումը, բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, բուն արտադրությունում կատարվող որակական փոփոխությունները ուժեղացնում են զարգացման ինտենսիվ գործոնները։ 1971—1983 թվականներին ժողովրդական տնտեսությունում հասարակական աշխատանքի արտադրողականությունն աճել է 1,8, իսկ բանվորների և ծառայողների թվաքանակը՝ 1,5 անգամ։ Ընդ որում, եթե հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին տասներորդ հնգամյակում ստացվել է հանրապետության ազգային եկամտի աճի մոտ 60 տոկոսը, ապա տասնմեկերորդում նախատեսվում է այն հասցնել 79 տոկոսի։

1981—1984 թվականներին հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է ազգային եկամտի աճի 65,1 տոկոսը, որն ապահովել է 151 հազար մարդու աշխատանքի տնտեսում։ Միաժամանակ իջել է հասարակական ամբողջական արդյունքի նյութատարությունը, որի շնորհիվ հումքի, նյութերի, վառելիքի և աշխատանքի այլ առարկաների խնայողությունը չորս տարում կազմել է 159 մլն ռուբլի, իսկ հնգամյակում այդ թիվը կհասնի 197 մլն ռուբլու։

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում առանձնապես հրատապ է դառնում արտադրության մեքենայացման ու ավտոմատացման նյութական բազայի՝ մեքենաշինության, համակողմանի և վերընթաց զարգացումը։ Աճի բարձր տեմպերի շնորհիվ արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալում և աշխատողների թվաքանակում անընդհատ բարձրանում է այդ ճյուղի տեսակարար կշիռը։ 1971—1983 թվականներին հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացել է 2,5, իսկ մեքենաշինությանը՝ 4,3 անգամ։ Միևնույն ժամանակ արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալում մեքենաշինության ու մետաղամշակման արտադրության տեսակարար կշիռը բարձրացել և 1970 թվականի 16,4 տոկոսից 1984 թվականին հասել է 29,1 տոկոսի։ Առանձնապես արագ տեմպերով են զարգանում մեքենաշինության այնպիսի ճյուղերը, ինչպիսիք են սարքաշինությունը, ռադիոտեխնիկական ու էլեկտրոնային արդյունաբերությունը, ճշգրիտ հաստոցաշինությունը, որոնք, առաջատար նշանակություն ունենալով տեխնիկական առաջադիմության արագացման գործում, նպաստավոր ձևով են ազդում աշխատանքային ռեսուրսների ու նյութական միջոցների ավելի լրիվ ու ռացիոնալ օգտագործման, արդյունաբերության ճյուղային կառուցվածքի կատարելագործման վրա։ 1981—1984 թվականներին սարքաշինության արտադրանքի ծավալը կրկնապատկվել է, իսկ աճի միջին տարեկան տեմպը կազմել է 13,7 տոկոս։

տնտեսական ղեկավարությանը, համապատասխան ծառայություններին և կազմակերպություններին հնարավորություն են տալիս պարզորոշ տեսնելու իրական պատկերը, բացահայտելու արտադրության ու աշխատանքի նեղ տեղերը, ճշտորեն գնահատելու աշխատատեղերը աշխատանքի գիտական կազմակերպման պահանջների տեսանկյունից։

Աշխատատեղերի կազմակերպական-տեխնիկական մակարդակը բարձրացնելու հիմնական ուղին արտադրությունում առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումն է, աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի ընդլայնումը և զարգացումը, մեքենասարքավորումների աշխատանքի ծանրաբեռնվածության ու հերթափոխայնության գործակցի բարձրացումը, աշխատաժամանակի կորուստների, կադրերի հոսունության կրճատումը, աշխատուժի օգտագործման, կադրերի պատրաստման և դրանց որակավորումը բարձրացնելու գործի արմատական բարելավումը։

Այժմ արդեն խնդիր է դրվում գալիք հնգամյակի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները մշակելիս լայնորեն օգտագործել աշխատատեղերի ատեստավորման փորձը, հասնել գործող կարողությունների, ամբողջ արտադրական պոտենցիալի առավելագույն հատույցի։

Այսպիսով, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, աշխատանքային պոտենցիալը օպտիմալ օգտագործելու համար նպատակահարմար է կապիտալ ներդրումները, սարքավորումներն ու մեքենաները, մյուս ռեսուրսներն առաջին հերթին հատկացնել աշխատատեղերի տեխնիկական վերակառուցմանն ու վերասփնմանը, դրանց ռացիոնալացմանը՝ ելնելով տեխնիկայի և տեխնոլոգիայի զարգացման, աշխատանքի գիտական կազմակերպման ժամանակակից պահանջներից։ Այդ գործում հարկավոր է կիրառել հայրենական ու արտասահմանյան առաջավոր փորձը, արտադրության մեքենայացման և ավտոմատացման նորագույն նվաճումները, հատկապես ռոբոտատեխնիկայի միջոցները։ Պրակտիկան հաստատել է, որ արտադրության ավտոմատացումը սովորական, ավանդական միջոցներով թույլ է տալիս բանվորների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 20—70 տոկոսով, ռոբոտների կիրառումը՝ մի քանի անգամ, իսկ ռոբոտատեխնիկական համակարգերի արմատավորումը՝ տասն անգամից ոչ պակաս։

Միանգամայն բնական է, որ նշված հարցերի լուծումը պահանջում է հսկայական կապիտալ միջոցներ։ Իսկ որտեղի՞ց վերցնել այդ միջոցները։ Այդ հարցի պատասխանը տրվեց գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունում։ Գլխավորն այստեղ ռեսուրսներով մանևրումն է, հիմնական ուղղություններում դրանց կենտրոնացումը։ Առաջնահերթ խնդիր է կազմակերպական, տնտեսական, սոցիալական գործոնների մոբիլիզացումը, կարգ ու կանոնի հաստատումը ամեն ինչում, արտադրության կազմակերպման բարելավումը, որպեսզի ապահովվի մեր ունեցած ռեսուրսների լավագույն օգտագործումը։ Յուրաքանչյուր միավորման մեջ և ձեռնարկությունում, ամեն մի արտադրական տեղամասում անհրաժեշտ է որոշել այն օղակները, որտեղ նվազագույն ծախսերով կամ էլ բոլորովին առանց դրանց կարելի է առավելագույնը ստանալ։ Այն բանից, ինչ չափով և որքան արագ կլուծվեն նշված խնդիրները, մեծապես կախված կլինեն թե՛ արտադրության արդյունավետության աճի տեմպերը, առկա աշխատանքային ծանրակշիռ պոտենցիալի հմուտ և ռացիոնալ օգտագործումը, և թե մեր հասարակության առջև ծառացած սոցիալ-տնտեսական լուրջ պրոբլեմների լուծումը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումն ընդգծեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, հասարակական կյանքի բոլոր կողմերը կատարելագործելու անհրաժեշտությունը։ Ինչպես նշվեց պլենումում, պետք է հասնել այն բանին, որ վճռական շրջադարձ կատարվի ժողովրդական տնտեսությունը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու գործում։ Մենք պարտավոր ենք կարճ ժամանակամիջոցում դուրս գալ ամենաառաջավոր գիտատեխնիկական դիրքերը, հասնել հանրային աշխատանքի արտադրողականության ամենաբարձր մակարդակին։

---



# ՆՈՐ ԳԻՏԵԼԻՔԻ ԸՆԲՌՆՈՒՄԸ ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՄԱԿԱՐԴԱԿԸ և գիտատեխնիկական հեղափոխությունը քաղաքակրթության մեծագույն նվաճումներից են։ Մարդկության հոգևոր և նյութական արժեքների ստեղծման համակարգում մեծ է գիտատեխնիկական առաջընթացի և նոր գիտելիքի ադեկվատ ընկալման ու արժեքավորման դերը։

Պատմության ընթացքում ամբողջ դարաշրջաններ բնութագրվել են առանձին գիտական ու տեխնիկական հայտնագործություններով՝ լինի դա աշխատանքային գործիք թե զենք։ Ինչպես, օրինակ, անիվի, ապակու, վառոդի, շոգու և այլնի դար։ Մինչդեռ մեր դարաշրջանը ամենատարբեր հայտնագործությունների՝ ատոմի ու հրթիռի, լազերի ու էլեկտրոնիկայի, սինթետիկայի և, ընդհանուր առմամբ, գիտության դար են կոչում։

Գիտության զարգացման ու գիտատեխնիկական առաջընթացի դերը հասարակական կյանքում բարձր են գնահատել մարքսիզմի դասականները։ Դեռևս քարածխային շերտից անմիջականորեն գազ արդյունահանելու եղանակի կապակցությամբ Վ. Ի. Լենինը նշել է, որ «հսկայական է այն հեղաշրջումը, որ առաջացնում է դրա լուծումը... Բայց ժամանակակից կապիտալիստական կարգերում այդ հեղաշրջման հետևանքներն ամբողջ հասարակական կյանքի համար բոլորովին այն չեն լինի, ինչ կառաջացներ այդ հայտնագործումը սոցիալիզմի ժամանակ... Կապիտալիզմի տեխնիկան օրեցօր ավելի ու ավելի է գերաճում այն հասարակական պայմաններից, որոնք աշխատավորներին դատապարտում են վարձու ստրկության» (ՆԼԺ, հ. 23, էջ 111—113)։

Զարգացման ընթացքում գիտությունը, ինչպես հասարակական մյուս երեւույթները, ժամանակ առ ժամանակ, երբեմն մասնակի, երբեմն արմատական փոփոխություններ է կրում։

Գիտության և տեխնիկայի նվաճումների արագ ներդրումը մեր երկրի ժողովրդական տնտեսության ամենատարբեր ճյուղերում տնտեսական, հասարակական-սոցիալական զարգացման ծրագրային դրույթներից է։ Այդ մասին նշված է ՍՄԿԿ XXVI համագումարում և կուսակցության մյուս փաստաթղթերում։ «ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և դրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրների մասին» զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման, կուտակված պոտենցիալի լավագույն օգտագործման գլխավոր ստրատեգիական լծակ՝ կուսակցությունն առաջին պլան է մղում գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացումը»։ Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ներդրումը

ժողովրդական տնտեսության մեջ առաջին հերթին նշանակում է արտադրության ավտոմատացում ու էլեկտրիֆիկացում, արտադրողականության բարձրացում ու արտադրանքի ինքնարժեքի իջեցում, գյուղատնտեսության մեջ ագրոարդյունաբերական համալիրի կառուցում: Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառները՝ ընդհուպ մինչև լուսավորության համակարգի կատարելագործումը, առնչվում են գիտատեխնիկական առաջընթացի արագացման, նոր գիտելիքների ըմբռնման ու ադեկվատ գնահատման հետ: Գիտատեխնիկական առաջընթացի, կառավարման կատարելագործման հիման վրա ձեռք է բերվել արդյունավետության բարձրացում, հանրային աշխատանքի արտադրողականության աճ: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման տասնմեկերորդ հնգամյակի խնդիրներում նշված է, որ անհրաժեշտ է «ապահովել գիտատեխնիկական առաջընթացի հետագա արագացում»: Դա կոմպլեքսային ծրագրի իրականացման հիմնական պայմաններից ու պահանջներից է, որն ընդգրկում է նոր գիտելիքի ըմբռնում՝ գիտահետազոտական աշխատանքի նախագծումից մինչև գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումը:

Գիտության ու տեխնիկայի զարգացման պատմությունը ցույց է տալիս, որ տարբեր ժամանակներում գիտական մտածողության ու գործունեության արմատական փոփոխություններն առնչվում են գիտական հայտնագործությունների հետ, որոնք արմատապես վերափոխում են առկա պատկերացումները բնության ու հասարակության մասին. հարաբերականության և քվանտային տեսությունները ոչ միայն նոր գիտելիքներ են մատերիական աշխարհի, նյութի կառուցվածքի ու շարժման մասին, այլև, ասենք, ատոմի կառուցվածքի, միկրոօբյեկտների հետագա ուսումնասիրության մեթոդ են: Նույնը կարելի է ասել գենետիկայի մասին, որը բացահայտում է ոչ միայն կենդանի օրգանիզմների կառուցվածքն ու գործողությունները, այլև կյանքի հիմքերն ուսումնասիրելու և ճանաչելու մեթոդ է: Ժամանակակից հոգեբանությունը ոչ միայն բացահայտում է հոգեկան երևույթները, այլև սահմանում դրանց կիրառման շրջանակները: Մի խոսքով՝ ամեն մի նոր գիտելիք ինքնանպատակ չէ: Այն պրակտիկ կիրառության, գործունեության միջոց է:

Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում նոր գիտելիքի ազդեցությունը մարդն զգում է ոչ միայն արտադրության պրոցեսում, այլև ամենուրեք, կուլտուրայի ու կենցաղի բոլոր բնագավառներում:

Ճապոնացի պրոֆեսոր Մ. Կիտամուրան նշում է, որ ժամանակակից էլեկտրոնիկայի դարաշրջանում միկրոէլեկտրոնիկան խոստանում է արդյունաբերական երկրորդ հեղափոխություն, որը հասարակության վրա ավելի մեծ ազդեցություն կարող է գործել, քան արդյունաբերական առաջին հեղաշրջումը:

Արդի գիտատեխնիկական հեղափոխությունն իր հետ բերել է ատոմային էներգիա ու հրթիռներ, հեռուստացույց ու էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, լազեր, միկրոէլեկտրոնային այլ տիպի սարքեր, գիտելիքներ ու տեխնիկա: Այդ բոլորը բավականին բարդ ու համակողմանի, երբեմն էլ հակասական բնույթի հետևանքներ են ունենում: Գիտական նորագույն հայտնագործությունները գերազանցում են մարդկային ոչ միայն սովորական, այլև ֆանտաստիկ միտքն ու պատկերացումները: Այդ հայտնագործությունների շնորհիվ մարդը տեսնում է սովորական աչքին անտեսանելի, բայց միլիոն անգամ մեծացված մասնիկը, որսում ականջի համար անլսելի ձայները, ներթափանցում բնության ու մարդու գաղտնիքների անհաս խորքերը: Մարդը դրանք բացահայտում, ճանաչում, փոփոխում ու հարմարեցնում է իր նպատակներին, ծառայեցնում հասարակության, արտադրության և մյուս խնդիրների լուծմանն ու նոր բնագավառների նվաճմանը: ԳՏՀ-ի դարում մարդը լազերային ճառագայթի օգնությամբ կառուցում է աշտարակներ, էլեկտրոնային մանրադիտակով միլիոն անգամ մեծացրել է բակտերիան, մոլորակներ ուղարկել արհեստական արբանյակներ, ոտք դրել լուսնի վրա, կառավարող կիբեռնետիկական այլ սարքեր է ստեղծել, սինթետիկ երիկամ ու սիրտ պատվաստել և, դրանց կողքին, պատրաստել է նաև նեյտրոնային ռումբ ու կործանարար այլ միջոցներ:

Միկրո, մակրո և մեգաաշխարհների այդ և մյուս նոր տվյալները սկզբում, մեծ մասամբ, ձեռք են բերվում որպես գիտելիք: Այդ գիտելիքները



պետք է ըմբռնվեն, իրացվեն և, հնարավորության դեպքում, ճիշտ ժամանակին
օգտագործվեն:
Նոր գիտելիքների ըմբռնման իմացաբանական-հոգեբանական ուղին կա-
րելի է համառոտակի նկարագրել որպես արդեն ճանաչվածի ճանաչում: Նորը
որևէ ձևով ներկայացվում է ընկալողին: Ինչ խոսք, որ կարևորությունը տրր-
վում է նրա բովանդակությանը: Նոր գիտելիքն ավելի խոր ու ճշգրիտ է ար-
տացոլում իրականությունը: Սակայն այն անսովոր է, բացի դրանից՝ լրացուցիչ
բացատրության ու մեկնաբանության կարիք ունի: Եթե դրան ավելացնենք
ընկալող համակարգի բազմանշանակ մեկնաբանության հնարավորությունը,
ապա պարզ կդառնա, թե ինչու նորը կարող է իր հետ բերել օբյեկտիվ և
սուբյեկտիվ հանգամանքներով պայմանավորված տարբեր ըմբռնումներ: Նոր
գիտելիքն ունի ադեկվատության երկու մակարդակ: Մեկը ընկալողի կողմից
իմաստավորման համապատասխանությունն է գիտելիքի բովանդակությանը,
երկրորդը այդ բովանդակության համադրումն է իրականության հետ: Նոր գի-
տելիքի բովանդակությունն ընկալողը լրացնում կամ փոփոխում է յուրովի:
Բանավոր խոսքի մեջ հոգեբանները միանգամայն ճիշտ են հաշվի առնում
լեզվական, բանավոր արտահայտության որակները, ռիթմը, դադարը, շեշ-
տադրումը, առոգանությունը, տեքստի ձևական կողմերը, մոդուլյացիաները և
այլ բաղադրիչները, որոնք ազդում են ընկալման վրա, նպաստում կամ, ընդ-
հակառակն, խանգարում են դրան: Ըմբռնման ընթացքում առկա են նաև հո-
գեբանական, գիտակցական, հասարակական ենթատեքստերը: Ընկալմանը
մասնակցում են պատկերացումն ու փորձը, գիտելիքն ու աշխարհայացքը,
բազմաթիվ այլ բաղադրիչներ ու գործոններ:

Գիտության և տեխնիկայի զարգացման համարյա բոլոր պրոբլեմները ներթափանցված են նոր գիտելիքի ըմբռնումով՝ գիտական-իմացաբանական, վերլուծական-ուսուցողական, կիրառական-պրագմատիկ նպատակներով: Այդ պրոցեսում է, որ վեր են հանվում զարգացման բարդ ու հակասական էությունն ու հետևանքները: Նրանք ընդգրկվում են հասարակական գործունեության և մտածողության համարյա բոլոր ոլորտները, ուսումնասիրվում մասնավորապես գիտաբանության, գիտության սոցիոլոգիայի, տեխնիկական, տընտեսական, ինֆորմացիոն, հոգեբանական, սոցիալական, փիլիսոփայական և աշխարհայացքային տեսանկյուններից:

Այստեղ է, որ անհրաժեշտորեն բխում է դիալեկտիկական մոտեցում՝ ամենը դիտարկել փոխկապակցվածության, փոխազդեցության, փոխներգործության և հարաբերական ինքնուրույնության մեջ, բոլոր կողմերից: Միայն այդպես է հնարավոր ստանալ արդի ԳՏՀ-ի պայմաններում նոր գիտելիքի ըմբռնման համեմատաբար ընդհանուր, ռեալ պատկերը:

Գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում նոր գիտելիքի ըմբռնումը կապված է ինֆորմացիայի կազմակերպական, կառուցվածքային, գործառական մի շարք խնդիրների հետ, որոնք, չնայած իրենց բարդությանն ու դժվարություններին, ստանում են համապատասխան լուծումներ: Սակայն այդ լուծումները վերջնական ու լիովին անկախ չեն սոցիալ-տնտեսական խնդիրներից: Այլ կերպ ասած, գիտատեխնիկական հեղափոխությունը և նրա ըմբռնումը դուրս չեն հասարակական առաջընթացի ընդհանուր պրոցեսից:

Նորը գիտական ստեղծագործության արդյունք է, որը սկզբում գիտելիքի ձևով, ըմբռնմանը հասանելի միջոցներով հասցվում է գիտական և մյուս շըրջանակներին: Իմացաբանական տեսանկյունից այն կարող է առաջացնել պարադոքսալ վիճակներ: Նրա կիրառումը սոցիալական տեսանկյունից կարող է ունենալ տարբեր հետևանքներ:

Այդ ինֆորմացիայի ընդհանուր հոսքին տրվող բնութագրերի մեջ կրկնվում ու աչքի է զարնում, առաջին հերթին, այն, որ այդ հոսքը բուռն է, սրընթաց, որ գոյացրել է ինֆորմացիայի հսկայական «Հիմալայ» ու շարունակում է կրկնապատկվել նոր արագությամբ: Ուսումնասիրությունների մեջ հանդիպում ենք ինֆորմացիայի «գերարտադրություն», «գիտելիքների գերհագեցածություն» և այլ արտահայտությունների: Նման իրադրությունից ելնելով՝ որոշ հետազոտողներ առաջարկում են դադարեցնել նոր ինֆորմացիայի հոսքը, նոր

վերաբերում են նրա գիտական, տրամաբանական և փորձնական հիմնավոր-
վածությունից մինչև հասարակական օգտակարության ոլորտներին։

Գիտության ու տեխնիկայի արագ ներդրումը, որը ԳՏՀ-ի երկրորդ ցուցա-
նիշն է, գիտությունը վերածում է առաջատար ոլորտի, ի հայտ բերելով աշ-
խատանքի հասարակական բաժանման նոր փուլ։

Արդի դարաշրջանի սոցիալիստական ու բուրժուական գաղափարախոսու-
թյունների պայքարում ծանրության կենտրոնը տեղափոխվում է գիտատեխնի-
կական հեղափոխության ու նրա հետևանքների բնագավառ։ Այդ հարցերում,
չնայած բուրժուական մտածողների ընդհանուր միտումներին, հնարավոր չէ
միարժեք գնահատել նրանց ըմբռնումները։ Այսպես, օրինակ, նրանց մի մասը
չի ընդունում ԳՏՀ-ն որպես իրողություն, այն համարելով «մեր ժամանակների
առասպել»։ Գաղափարախոսական հոսանքի մեկ այլ ուղղություն ոչ միայն
ընդունում, այլև բացարձականացնում է գիտության ու տեխնիկայի էությունն
ու դերը, փորձում դրանով արդարացնել կապիտալիստական հասարակության
որոշ ձևափոխություններ, դրանք համարելով նոր հասարակարգի երևույթներ։
Այդ մասին են վկայում տեխնոկրատական և ուլտրաժամանակակից տերմին-
ներով քողարկվող մի շարք հասարակական տեսություններ։

Երրորդ հոսանքը, որն առանձնանում է ԳՏՀ-ի ըմբռնման ու գնահատ-
ման տարբերակներում, փիլիսոփայական էկզիստենցիալիզմն է։ Դրա ներկա-
յացուցիչներից որոշ մտածողների մոտ առաջին պլան են մղվում գիտության
ու տեխնիկայի ունեցած բացասական հետևանքները։ Գաղափարախոսական
հոռետեսության, անկումայնության ու հուսահատության են մղում նրանց
ըմբռնումն ու դիրքորոշումը։ Նեոֆրոյդիզմի ներկայացուցիչներից Օ. Յունգը
գտնում է, որ մարդն ընդհարվում է անլուծելի պրոբլեմների հետ, և ԳՏՀ-ն
ոչ միայն չի նպաստում դրանց լուծմանը, այլև հանգեցնում է «հոգևոր ինֆ-
լյացիայի»։ Մարդն այսօրվա դրությամբ տիրապետում է այնքան շատ մի-
ջոցների, որ դրանով կարող է ոչնչացնել սեփական Երկիր մոլորակը։ Գիտա-
տեխնիկական հեղափոխության արդյունքում ստեղծվել է սահմանային իրա-
վիճակ։ Կուտակված ատոմային ու ջրածնային, նեյտրոնային ու միջուկային
այլ զենքի տեսակներն ու հրթիռները, արբանյակներն ու քիմիական-բակտե-
րիոլոգիական զենքերը, աղտոտված շրջակա միջավայրը, բարոյահոգեբանա-
կան անկումայնությունը և մի շարք այլ հանգամանքներ դրդում են նրանց
մտածելու, որ քաղաքակրթությունը կործանում է իրեն, մարդը զրկվում է իր
հատկանիշներից։ Նրանց թվում է, թե տեխնիկան, մանավանդ նորագույնը,
երբ դուրս է պրծնում մարդու ձեռքից ու հսկողության սահմաններից, կա-
ռավարման հնարավորություններից, անկախություն է ստանում, դառնում
մարդկային տառապանքի ու ողբերգության նոր աղբյուր։

Արդի ԳՏՀ-ի պայմաններում նոր գիտելիքների ոչ ադեկվատ ըմբռնման
ու մեխանիկական ընդհանրացման դեպքերը հանգեցնում են սխալ հետևու-
թյունների։ Նման միտումներ նկատվել են անցյալում։ Բնական որոշ գիտու-
թյունների օրինաչափությունների նույնական տեղափոխումը հասարակական
երևույթների բնագավառ այժմ էլ հանգեցնում է անցանկալի հետևանքների։ ՍՄԿԿ Կենտ-
կոմի 1983 թ. հունիսյան պլենումի նյութերում միանգամայն տեղին է նշված,
թե որքան քիչ արդյունավետ են բնական և տեխնիկական գիտությունների
հասկացություններն ու մեթոդները մեխանիկորեն հասարակական երևույթ-
ների բնագավառ տեղափոխելու փորձերը, բնության ու հասարակության
փոխհարաբերությունների պարզունակ մեկնաբանությունը, որը, ըստ էության,
խանգարում է հասարակագիտության հետ այդ գիտությունների բեղմնավոր
համագործակցության ամրապնդմանը։

Նոր գիտելիքի ըմբռնման հարցերի մասին մեր պատկերացումները թերի
կլինեն առանց ընկալող սուբյեկտի առանձնահատկությունների ճիշտ հաշ-
վառման։ Խոսքը միայն այն մասին չէ, որ ժամանակակից մարդը տեսնում է
ավելի հեռուն, զգում ավելի նուրբ ազդեցություններ, թափանցում գաղտնիք-
ների խորքերը, կառավարում բարդ երևույթներ։ Տվյալ դեպքում, ինչպես ար-
դեն նշվեց, խնդիրը նոր գիտելիքն ընկալող սուբյեկտին է վերաբերում, որի



դերում կարող են հանդես գալ մարդ-անհատը, խոշոր գիտնականն ու կոլեկ-
տիվը, գիտական աշխարհը կամ հասարակայնությունն ու մարդկությունը՝
ընդհանուր առմամբ։

Նոր գիտելիքն ընկալողը, ինչպես ամեն մի սուբյեկտ, անտարբեր, հայե-
լային, միակերպ ու միանշանակ ընկալող չէ։ Նա հոսքից առանձնացնում և
ընտրում է նորը, անհրաժեշտը, առավել օգտակարը, այն յուրովի ըմբռնում,
ձևափոխում և օգտագործում։

Այդ ընթացքում մեծ դեր են խաղում ընկալողի գիտելիքներն ու փորձը,
դիրքորոշումն ու հնարավորությունները։ Մարդը մինչև ԳՏՀ-ն ճանաչող սուբ-
յեկտ էր։ Նա չի դադարում այդպիսին լինելուց, սակայն շեշտվում են նրա
կարգավորող, կառավարող դերերը։ Փոփոխվում են գիտելիքները, դրանց հետ՝
նաև գործառնության ոլորտներն ու մակարդակը, փոփոխվում են դրանց
ըմբռնումները։

Որոշ մտածողներ, որպես սուբյեկտ են դիտարկում նաև մեքենան՝ նկատի
ունենալով ժամանակակից ԷՀՄ-երը և մյուս սարքերը, որոնք, որոշ առումով,
ինտելեկտուալ գործողություններ են կատարում։ Նրանք զուգահեռ են անց-
կացնում էվոլյուցիայի ընթացքում մարդու ըմբռնումների զարգացման միջև։
Մեքենային սուբյեկտի հատկանիշ վերագրելը բխում է այն հանգաման-
քից, որ որոշ բուրժուական մասնագետներ մտածողությունը չեն դիտարկում
որպես կոլեկտիվ ստեղծագործական պրոցես, այլ անհատների և, ավելի
ստույգ՝ միայն ուղեղի հատկանիշ։ Դրանից էլ բխում են նրանց այն եզրա-
կացությունները, որ ինչպես մարդն է հասել անսահմանության ըմբռնմանը,
այնպես էլ մեքենան ժամանակի ընթացքում կհասնի ուղեղին հատուկ վերա-
ցարկումների։

Գիտելիքի ըմբռնման պրոցեսը ներառնում է պատկերաիմաստային, ճա-
նաչողական, պատմատրամաբանական և սոցիալ-կուլտուրական երևույթների
մի շարք գործոններ ու բաղադրիչներ, որոնք ընկալող սուբյեկտներին հնա-
րավորություն են ընձեռում իմաստավորելու, կարգավորելու, արժեքավորելու
և նպատակահարմար օգտագործելու ամեն մի նոր գիտելիք։

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Վ. ՎԻՐԱԲՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ բոլոր փուլերում բանվոր դասակարգը եղել և մնում է հասարակության առաջատարը: Նրա դերն առավել աճում է զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում:

Բանվոր դասակարգի առաջատար դերն ապահովող կարևոր պայմաններից է նրա հասարակական-քաղաքական ու աշխատանքային ակտիվության հետագա ծավալումը: Այն կարևոր ազդակ է գիտատեխնիկական առաջընթացի արագացման, երկրի սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման համար: Անհրաժեշտ հոգատարություն ցուցաբերելով բանվոր դասակարգի հոգևոր ուժերի նկատմամբ, կուսակցությունը մշտապես խթանում է բանվոր դասակարգի հասարակական-քաղաքական, աշխատանքային ակտիվության բարձրացումը: Նոր հասարակարգի կառուցումը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր օղակների դինամիկ առաջընթացը պայմանավորված են աշխատավորական լայն մասսաների արտադրական կարգապահությամբ, համապետական մտածողությամբ, բանվորների սոցիալական ակտիվությամբ, արտադրության, պետական կառավարմանը նրանց մասնակցությամբ: Այժմ երկրի էկոնոմիկայի հետագա զարգացումը հնարավոր է միայն նրա ինտենսիվացման ուղիով, բանվորների սոցիալ-քաղաքական հարաճուն ակտիվության պայմաններում:

Բանվոր դասակարգի առաջատար դերի ապահովումը հասարակության մեջ պայմանավորված է սոցիալիզմի քաղաքական-տնտեսական զարգացման օբյեկտիվ ընթացքով, որն իրականացվում է ոչ թե տարբերայնորեն, այլ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: Սոցիալիստական հասարակության քաղաքականապես ամենաակտիվ դասակարգի՝ բանվորների շարքերից ՍՄԿԿ-ն կառավարման ոլորտն է ընդգրկում համապատասխան կադրեր: Ներկայումս բանվոր դասակարգը ՍՍՀՄ-ում կազմում է ավելի քան 80,5 միլիոն մարդ կամ ամբողջ բնակչության 60,9 տոկոսը, Հայկական ՍՍՀ-ում՝ 900 հազար: Ըստ որում նրա հարաբերական աճը մեր հանրապետությունում ավելի արագ է տեղի ունենում, քան Միությունում: Այսպես, եթե 1960—1979 թթ. ՍՍՀՄ-ում այն աճեց մոտ 1,7 անգամ, ապա Հայկական ՍՍՀ-ում այդ նույն ժամանակահատվածում՝ մոտ 2,7 անգամ: 1979 թվականի մարդահամարի տվյալներով ՀՍՍՀ զբաղված բնակչության թիվը հասնում էր մոտ մեկ միլիոն 445 հազարի, որի 61,3 տոկոսը բանվորներ էին:

Բանվոր դասակարգը կազմել և շարունակում է կազմել իր առաջավոր ջոկատի՝ ՍՄԿԿ-ի սոցիալական հիմնախարիսխը: Բանվորների տեսակարար կշիռը կոմունիստական կուսակցության կազմում 1957 թվականի 32 տոկոսից (2,39 մլն մարդ) 1983 թվականին հասել էր 44,2 տոկոսի (7,99 մլն մարդ): Բանվորները զգալի թիվ են կազմում նաև ՍՄԿԿ-ի ազգային ինտերնացիոնալ



ջոկատներում: Հայկական ՍՍՀ-ում, համապատասխանաբար, բանվորների տեսակարար կշիռը ՀԿԿ-ի կազմում 1957 թվականի 24,6 տոկոսից (17.686 մարդ) 1980 թվականին հասել էր 39,5 տոկոսի (63.589 մարդ), իսկ արդեն 1983 թվականին բոլոր կոմունիստների թիվը հասավ 173.172 մարդու, որի գերակշռող մասը՝ 42,1 տոկոսը, կազմում էին բանվորները: Կոմունիստական շինարարության պրոցեսում ՍՄԿԿ-ի ղեկավար դերի աճի համար միանգամայն օրինաչափ է, որ կուսակցությունն առաջին հերթին աճում և ամրապնդվում է բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչների հաշվին:

ՍՄԿԿ-ն իր էությամբ եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցություն: Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է շեշտել, որ կուսակցության դասակարգային բնույթը պայմանավորվում է ոչ միայն նրա սոցիալական կազմով, այլ առաջին հերթին նրա քաղաքականությամբ: Այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը նշել է. «...կուսակցությունն իսկապես քաղաքական բանվորական կուսակցություն է, թե ոչ, դա կախված է ոչ միայն այն բանից, թե նա արդյոք բանվորներից է բաղկացած, այլև նրանից, թե ո՛վ է ղեկավարում նրան և ո՛րն է նրա գործողությունների ու նրա քաղաքական տակտիկայի բովանդակությունը» (ԵԼԺ, հ. 41, էջ 314):

Զարգացած սոցիալիզմի քաղաքական համակարգը նպաստում է նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրության՝ միասնական սովետական ժողովրդի, հետագա զարգացմանը: Մեր հասարակության առաջատար սոցիալ-քաղաքական ուժը բանվոր դասակարգն է, որի կոմունիստական իդեալները և սոցիալիստական շահերը խորապես ընկալում են կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը: «Գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրն է, շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում,— հասնել այն բանին, որ բանվոր դասակարգի հեղափոխական գաղափարախոսությունը և բարոյականությունը, նրա կոլեկտիվիստական հոգեբանությունը, շահերն ու հայացքները որոշեն բոլոր սովետական մարդկանց հոգևոր կերպարը»:

Միանգամայն օրինաչափ է նաև, որ ՍՄԿԿ-ի շարքերում այժմ զգալի թիվ են կազմում կոլտնտեսային գյուղացիության (12,4 տոկոս) և ժողովրդական մտավորականության (43,5 տոկոս) ներկայացուցիչները: 1980 թ. հունվարի տվյալներով, Հայաստանի կոմկուսի շարքերում կոլտնտեսականները կազմում են 18,4 տոկոս, տեխնիկական, գիտական, ստեղծագործական մտավորականության ներկայացուցիչները՝ 42 տոկոս:

Բանվոր դասակարգի հասարակական-քաղաքական, աշխատանքային ակտիվությունը, կոմունիստական շինարարության պրոցեսում նրա կուտակած փորձը նոր հասարակարգի կառուցման գլխավոր պայմաններից են:

ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ կոմունիստական շինարարության ընթացքում կարևորվում են բանվոր դասակարգի ստեղծագործական կարողությունների լիարժեք օգտագործումը, նրա բոլոր ազգային ջոկատների քաղաքական հասունության, կրթական մակարդակի, պրոֆեսիոնալ պատրաստության բարձրացումը: ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է հատկացնում աշխատավորական լայն զանգվածների, մասնավորապես բանվորների կարծիքի ուսումնասիրությանը: Սոցիալիստական հասարակարգի տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման ծրագիրը մշակելիս կուսակցությունը ղեկավարվում է Վ. Ի. Լենինի հայտնի ցուցումով, որ «...մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը: Առանց դրա կոմունիստական կուսակցությունը չի կարող առաջնորդել պրոլետարիատին, իսկ պրոլետարիատը չի կարող իր հետևից տանել մասսաներին...» (ԵԼԺ, հ. 45, էջ 139):

Հայտնի է, որ կուսակցության գործունեության մեջ լայն և հաստատուն տեղ է գրավում բանվորների համակողմանի ներգրավումը ներքին և միջազգային քաղաքականության կարևորագույն հարցերի քննարկմանը: Դեռևս 1920 թվականին, բարձր գնահատելով բանվորական ժողովների անցկացման

1966—1984 թվականներին ամբողջ երկրում սոցմրցության մասնակիցների թիվն ավելացավ գրեթե 2 անգամ՝ 55,1 միլիոնից հասավ շուրջ 110 միլիոն մարդու։ Մրցությանը մասնակցեցին բանվոր դասակարգի գրեթե բոլոր ներկայացուցիչները՝ ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների ավելի քան 94 տոկոսը։

Հայկական ՍՍՀ-ում սոցմրցության մասնակիցների թիվը 1977 թ. 776 հազարից 1983 թ. հասավ շուրջ մեկ միլիոնի, որից ավելի քան 600 հազարը մասնակցում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Ներկայումս այդ շարժմանն են մասնակցում կոմունիստական աշխատանքի դպրոցների 35 հազարից ավելի ունկնդիրներ։ Միայն 220 հազար բանվոր և ծառայող, 8,3 հազար բրիգադ, 2.971 արտադրամաս ու տեղամաս, 105 ձեռնարկություն և կազմակերպություն կրում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի ու հարվածայինի բարձր կոչումը։

ՍՄԿԿ-ն միշտ էլ կարևորել է բանվորների ներգրավումը արտադրության, հասարակական կյանքի բոլոր ոլորտների կառավարման գործում։ «Մեր բոլոր հաջողություններն արդյունք են այն բանի,— նշել է Վ. Ի. Լենինը,— որ բանվորները դա հասկացել են և ձեռնամուխ են եղել իրենց սովետների միջոցով պետությունը կառավարելու գործին» (ԵԼԺ, հ. 37, էջ 104)։

Բարձր ակտիվության և գործնականության պայմաններում անցան կուսկազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների ժողովները՝ կապված ՀՍՍՀ սահմանադրության համաժողովրդական քննարկման հետ։ Միայն Երևան քաղաքում կայացավ 1.804 ժողով, որոնց մասնակցեց մոտ 300 հազար մարդ։ Քննարկման ընթացքում արվեցին ավելի քան 500 դիտողություն և առաջարկություն։

Սովետական հասարակության մեջ բանվոր դասակարգի հասարակական-քաղաքական ակտիվությունն առանձնապես ցայտուն կերպով երևում է ժողովրդական դեպուտատների սովետների և Գերագույն սովետի աշխատանքներում։ ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետում ընտրվել են 527 բանվորներ կամ դեպուտատների ընդհանուր թվի 35,2 տոկոսը։

1980 թվականին միութենական հանրապետությունների Գերագույն սովետների դեպուտատներ դարձան 2.232 բանվոր (33,2 տոկոս), իսկ արդեն 1985 թ.՝ 2.277-ը կամ 33,8 տոկոսը։ Մշտապես աճում է նրանց տեսակարար կշիռը նաև տեղական սովետների կազմում, որտեղ 1980 թ. ընտրվել են 985.896 բանվոր դեպուտատներ (43,3 տոկոս), իսկ 1985 թ. նրանց թիվը հասավ 1.024.675 մարդու, որը կազմում է բոլոր դեպուտատների 44,5 տոկոսը։

Բանվորների տեսակարար կշիռն ավելի բարձր է քաղաքային սովետներում։ Այստեղ երկրի մասշտաբով 1977 թ. բանվորները կազմում էին 61,3, 1980 թ.՝ 62 տոկոս, իսկ արդեն 1985 թ. քաղաքային սովետներում ընտրված էին 183.316 բանվոր-դեպուտատներ կամ դեպուտատների ընդհանուր թվի 63 տոկոսը։ Մեր հանրապետությունում ևս բանվորներն ակտիվորեն մասնակցում են սովետների մշտական հանձնաժողովների, վերահսկողության մարմինների գործունեությանը։ Հայկական ՍՍՀ տասներորդ գումարման Գերագույն սովետում ընտրված բանվորները 135-ն էին, որը կազմում էր դեպուտատների ընդհանուր թվի 39,7 տոկոսը, իսկ արդեն ՀՍՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի դեպուտատներից 144-ը կամ 42,6 տոկոսը հասարակական արտադրության վճռական տեղամասերում զբաղված առաջավոր բանվորներ են։ Մշտապես աճում է նրանց տեսակարար կշիռը նաև հանրապետության տեղական սովետներում, որտեղ բանվոր-դեպուտատները 1980 թ. կազմում էին ժողովրդական դեպուտատների տեղական սովետներում ընտրված դեպուտատների ընդհանուր թվի 48,4 տոկոսը, 1982 թ. ընտրություններում՝ 13.742 մարդ կամ 50,6 տոկոսը, իսկ ներկայումս բանվոր-դեպուտատների թիվը ՀՍՍՀ-ի տեղական սովետներում հասնում է 13.895-ի կամ 50,6 տոկոսի։

Այսպիսով, պետական իշխանության կենտրոնական և տեղական օրգանների դեպուտատական կազմը լիովին արտացոլում է բանվոր դասակարգի



առաջատար դերը սոցիալիստական հասարակության սոցիալական կառուցվածքում։ Սակայն միաժամանակ սովետների գործունեության մեջ բանվորների լայն ներգրավմամբ ընթանում է և մյուս օրինաչափ պրոցեսը՝ աճում և ամրապնդվում է կուսակցական կորիզը պետական իշխանության մարմիններում։ Ներկայումս ՍՍՀՄ-ում տեղական սովետների դեպուտատների կազմում կան 987.483 ՍՄԿԿ անդամներ և անդամության թեկնածուներ կամ նրանց ընդհանուր թվի 42,8 տոկոսը։ Հայկական ՍՍՀ-ում, համապատասխանաբար, ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների թիվը հասնում է 11.862 հոգու կամ ընտրված դեպուտատների ընդհանուր թվի 43,2 տոկոսը։ Մեր երկրում ոչ միայն ապահովված է ամենօրյա կուսակցական ղեկավարությունը բանվոր դասակարգի պետական գործունեության նկատմամբ, այլև նշանակալիորեն մեծանում է բանվոր-դեպուտատների դերը, ընդլայնվում են նրանց լիազորությունները տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերում սովետների գործունեությունն ակտիվացնելու համար։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ «Սոցիալիզմը կարող է ստեղծվել և ամրապնդվել միայն այն ժամանակ, երբ բանվոր դասակարգը կսովորի կառավարել...» (ԵԼԺ, հ. 37, էջ 168)։

Արդյունաբերության և ընդհանրապես ժողովրդական տնտեսության կառավարման գործին ավելի շատ բանվորների և աշխատավոր գյուղացիների ներգրավելու մասին լենինյան ցուցումն իր հստակ արտացոլումն է գտել ՍՍՀՄ սահմանադրության 16-րդ և 48-րդ հոդվածներում, ինչպես նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի ընդունած «Աշխատավորական կոլեկտիվների և ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների կառավարման գործում նրանց դերի բարձրացման մասին» օրենքում։

Տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման գործում մեծ է մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների (ՄԳԱԽ) դերը։ «Զարգացնել աշխատավորների նախաձեռնությունը, ստեղծագործական ակտիվությունը տնտեսության կառավարման գործում,— նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում։ — Բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դերը արտադրության կառավարման ու պլանավորման գործում, կադրերի պատրաստման... կարգապահության ամրապնդման և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման գործում։ Բարձրացնել մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների և աշխատավորական կոլեկտիվների ընդհանուր ժողովների նշանակությունը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 325)։

Այժմ ՍՍՀՄ-ում գործում են 143,4 հազար մշտապես գործող արտադրական խորհրդակցություններ, որտեղ ընդգրկվածների մեծ մասը բանվորներ են։

ՄԳԱԽ-ներ կան երկրի համարյա բոլոր ձեռնարկություններում և կառույցներում։ 1977 թ. փետրվարի տվյալներով Հայկական ՍՍՀ-ում կային 1.180 համագործարանային և արտադրամասային ՄԳԱԽ-ներ, որոնցում ընդգրկված 50 հազար աշխատավորներից միայն երկու երրորդը բանվորներ էին, իսկ արդեն 1980 թ. հանրապետության ձեռնարկություններում և կազմակերպություններում գործում էին 1.355 համագործարանային, 158 արտադրամասային մշտապես գործող արտադրական խորհրդակցություններ և խորհրդակցությունների ներկայացուցիչների 14 խորհուրդներ, որոնցում ընդգրկված էին ավելի քան 58 հազար մարդ, այդ թվում՝ 39 հազար բանվորներ։ Միայն 1982 թվականին խորհրդակցություններն ունեցել են ավելի քան յոթ հազար նիստեր, որոնց մասնակցել են մոտ կես միլիոն բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու ծառայողներ։ Նրանց առաջարկությունների գերակշիռ մասը ներդրվել է արտադրության մեջ, որոնց տնտեսական արդյունքը կազմել է 4 մլն ռուբլուց ավելի։ Ընթացիկ հնգամյակի երրորդ տարվա սկզբին արդեն հանրապետության բոլոր ձեռնարկություններում և կազմակերպություններում գործում էին 1.554-ից ավելի համագործարանային և ար-

տադրամասային ՄԳԱԽ-ներ, որոնցում ընդգրկված 62 հազար աշխատավոր-
ներից ավելի քան 44 հազարը բանվորներ են։ Տարեկան միջին հաշվով ներ-
դրվում են խորհրդակցությունների կողմից մշակվող 14 հազար առաջարկ-
ներ։ ՄԳԱԽ-ները որոշակի ներդրում ունեն արտադրության զարգացման և
աշխատանքի կազմակերպման կատարելագործման, արտադրանքի որակի բա-
րելավման գործում։ Նրանցում է ձևավորվում արտադրական կոլեկտիվի հա-
սարակական կարծիքը։

«Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում, օրինակ, դրական փորձ է
կուտակվել սոցմրցության և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վե-
րաբերմունքի շարժման ծավալման բնագավառում։ Այն զգալիորեն նպաստել
է բանվորների հասարակական ու աշխատանքային ակտիվության բարձրաց-
մանը, պետական ու հանդիպական պլանների, սոցպարտավորությունների
հաջող կատարմանը։ ՄԳԱԽ-ներն այստեղ գործում են 1957 թվականից։ Ներ-
կայումս արտադրամիավորման 8 ձեռնարկություններում գործում են 17 մըշ-
տապես գործող արտադրական խորհրդակցություններ, բացի այդ, գլխամա-
սային գործարանում գործում է 23 հոգուց բաղկացած համագործարանային
նախագահությունը։ Գործնականում գրեթե բոլոր բանվորներն էլ անմիջակա-
նորեն մասնակցում են ՄԳԱԽ-ների աշխատանքներին։ Դրանց կազմում ընտր-
ված է կոլեկտիվի յուրաքանչյուր 9-րդ անդամը։ Ներկայումս արտադրամիա-
վորման բոլոր արտադրական խորհրդակցություններում ընդգրկված են 973
աշխատավորներ, որոնց 70 տոկոսը բանվորներ են։ Այստեղ աշխատավոր-
ների զգալի մասը մասնակցում է բանվորական ժողովներին, հանդես գալիս
կոնկրետ առաջարկներով։ Միայն անցած հնգամյակի տարիներին բանվոր-
ները և ինժեներատեխնիկական աշխատողները արել են 1.725 ռացիոնա-
լիզատորական առաջարկ։ Արտադրության մեջ ներդրվել և օգտագործվում են
1.100 նորույթներ՝ 2,5 մլն ռուբլու տարեկան տնտեսական արդյունքով։ 1982
թվականին Երևանի էլեկտրալամպերի գործարանի և արտադրամասերի մըշ-
տապես գործող արտադրական խորհրդակցությունները քննարկել են 45 առա-
ջարկություններ։ Մեծ թվով առաջարկություններ ներդրվել են արտադրության
մեջ՝ ձեռնարկությանը բերելով ավելի քան 164 հազար ռուբլու տնտեսական
օգուտ։ 1982 թ. հունվարին ուսումնասիրվեց և գործարանային ՄԳԱԽ-ում
քննարկվեց ապակու եփման նոր տեխնոլոգիայի կիրառման հարցը. արվեցին
մի շարք կարևոր առաջարկություններ։ Դրա շնորհիվ ձեռնարկությունը թո-
ղարկեց ավելի քան 59 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։

1983 թ. մարտին գործարանում քննարկվել է աշխատանքի կազմակերպ-
ման և վարձատրության բրիգադային եղանակի ներդրման հարցը։ Քննարկ-
ման արդյունքներն ամփոփվել են հոկտեմբերին։ Նախորդ տարվա համեմա-
տությամբ, բրիգադների թիվը միավորումում ավելացել է 42 տոկոսով կամ
804 բանվորով, տնտեսական օգուտը կազմել է 24 հազար ռուբլի։

ՍՍՀՄ-ում ամեն տարի ՄԳԱԽ-ները ընդունում են տնտեսական գործու-
նեության կատարելագործմանն ուղղված շուրջ կես միլիոն առաջարկություն,
որոնցից յուրաքանչյուր երրորդն ուղղված է թողարկվող արտադրանքի որակի
բարձրացմանը, յուրաքանչյուր հինգերորդը՝ աշխատանքային, նյութական և
վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողությանը։ Անցած հնգամյակի տա-
րիներին մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների անդամների
կողմից արվել է 7,3 միլիոն առաջարկ, որոնք նպաստել են արտադրության
արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը։ Միայն 1979—83
թթ. մեր երկիրը ՄԳԱԽ-ների առաջարկությունների ներդրումից ստացել է
3,2 միլիարդ ռուբլու խնայողություն։

Այժմ, երբ երկրի հետագա հզորացումը հնարավոր է միայն էկոնոմիկայի
ինտենսիվացման ճանապարհով, բացառիկ կերպով կարևորվում են բանվոր-
ների սոցիալ-քաղաքական ակտիվության բարձրացումը, համապետական
խնդիրների լուծման գործում նրանց նվիրվածությունը և կոլեկտիվիզմը։ Հա-
պահության ամրապնդումը, կազմակերպվածությունը և կոլեկտիվիզմը։ Հա-



սուն սոցիալիզմի կատարելագործման ներկայիս փուլում հատկապես հրա-
տապ է Վ. Ի. Լենինի ցուցումն այն մասին, որ «Գիտակից բանվորների հա-
մար չկա ավելի կարևոր խնդիր, քան գիտենալ իր դասակարգի շարժումը,
նրա էությունը, նրա նպատակներն ու խնդիրները, նրա պայմաններն ու
պրակտիկ ձևերը» (ԵԼԺ, հ. 25, էջ 293)։

ՍՄԿԿ-ն, ելնելով կուսակցության XXVI համագումարի որոշումներից,
էլ ավելի է ընդլայնում և կատարելագործում բանվոր դասակարգին պետու-
թյան և արտադրության կառավարման գործում ներգրավելու մեթոդներն ու
ձևերը, բարձրացնում նրա հասարակական-քաղաքական ու աշխատանքային
ակտիվությունը։ Բանվոր դասակարգը, որպես ամենաառաջավոր, գիտակից,
սովետական հասարակության ամենակազմակերպված ուժ, իր ավանգարդի՝
ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ այսուհետև էլ կատարում է իր առաջատար դերը
հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, նորանոր հաջողություններով
և մեր օրերի արմատական պահանջների խոր գիտակցությամբ ընթանում դե-
պի հարաղատ կուսակցության XXVII համագումարը։ «...Արդի փուլի բարդ
ու մասշտաբային խնդիրները, որոնք շոշափում են մեր կյանքի բոլոր կող-
մերը,— ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում նշեց ընկեր Մ. Ս.
Գորբաչովը,— կարելի է լուծել միայն հենվելով ժողովրդի կենդանի ստեղծա-
գործության, նրա բանականության, տաղանդի և աշխատանքի վրա։ Մենք
պետք է այդ խնդիրների կատարման համար ոտքի հանենք միլիոնավոր աշ-
խատավորների, մշտապես զարգացնենք բանվոր դասակարգի, գյուղացիու-
թյան և մտավորականության նախաձեռնությունն ու եռանդը, շարժման մեջ
դնենք այն անսպառ հնարավորությունները, որ ունի սոցիալիստական հա-
սարակությունը, ավելի ակտիվորեն պաշտպանենք բոլոր օգտակար ձեռնար-
կումները»։

---

## Խմբագրության փոստից

# «ԳՈՐԾՆԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ» ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

**Մ. ՌԱՋՈՒ**
**Գ. ՍՈՐՈԿՈ**

Ինչպես հայտնի է, ժողովրդական տնտեսությունը, նրա բոլոր ճյուղերը, ձեռնարկությունները իրենցից ներկայացնում են սոցիալ-տնտեսական համակարգ, որոնք կարող են արդյունավետ գործել բաղադրատարրերի համամասնական հարաբերակցության պայմաններում: Արտադրության մշտական առաջընթացը պայմանավորում է կառավարման անընդհատ կատարելագործման անհրաժեշտությունը: Ընդ որում կառավարման կազմակերպման մակարդակի աճը մշտապես պետք է առաջ անցնի արտադրության կազմակերպման մակարդակի աճից. դրանում է հասարակական արտադրության արդյունավետության պոտենցիալի հիմքը:

ՍՄԿԿ XXVI համագումարը զարգացրեց սոցիալիստական արտադրության կառավարման տեսությունը՝ կառավարման կազմակերպման և զարգացած սոցիալիզմի տնտեսական մեխանիզմի կատարելագործման հարցերի վերաբերյալ: Այստեղ վճռորոշ օղակը, բառի ամենալայն իմաստով, դառնում է էկոնոմիկայի կառավարման կազմակերպումը, դրա անընդհատ կատարելագործումը: Դնեպրոպետրովսկ քաղաքում 1985 թ. հունիսի 26-ին ունեցած իր ելույթում ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ մեծ ուշադրություն պետք է նվիրել տնտեսական կադրերի պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակին, նրանց նախաձեռնության, ձեռներեցության զարգացմանը:

Սովետական ժամանակակից տնտեսավարից պահանջվում են գիտական ու տեխնիկական նոր լուծումների, աշխատանքի կազմակերպման առաջավոր գործելաձևերի ակտիվ օգտագործում, արտադրության ռեզերվների ստեղծագործական որոնումներ, փոփոխվող պահանջմունքի ու պահանջարկի ուշադիր հաշվառում: Նա պետք է ունենա նորի սուր զգացողություն, տեսնի հեռանկարը և կարողանա գործիմաց ու լավատեղյակ որոշումներ ընդունել կուսակցական դիրքորոշումից՝ լինել կոլեկտիվի դաստիարակ, արտադրության կազմակերպիչ: Այս ամենն առանձնապես կարևորվում է այժմ, երբ մեր կուսակցության ու պետության տնտեսական քաղաքականության կենտրոնում են գտնվում աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման խնդիրները:

«Կառավարման ամեն մի աշխատանք,— ասել է Վ. Ի. Լենինը,— պահանջում է առանձին հատկություններ: Կարելի է լինել ամենաուժեղ հեղափոխական ու ագիտատոր և բոլորովին անպետք ադմինիստրատոր: ...Կառավարելու համար հարկավոր է ձեռնհաս լինել, հարկավոր է լիովին և մինչև մանրամասները գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան՝ նրա ժամանակակից բարձրությամբ, հարկավոր է ունենալ գիտական որոշ կրթություն» (**ԵԼԺ**, հ. 40, էջ 259):

Արդի պայմաններում խոշորամասշտաբ արտադրությունում տնտեսական գործերում թույլ տրվող սխալները թանկ են նստում: Առանց տեսության, առանց մասնագիտական կրթության մենք շատ բան ենք կորցնում նաև կառավարման բնագավառում:

Արտադրության աճող մասշտաբները, լուծվող խնդիրների բարդությունը թելադրում են հետևողականորեն բարելավել կադրերի հետ տարվող աշխատանքը: Այդ խնդիրների կատարման համար տնտեսական ղեկավարները և արտադրության կառավարման համակարգում զբաղված բոլոր աշխատողները պետք է կառավարման բնագավառի վերաբերյալ խոր գիտելիքներ ունենան: Չէ որ գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում գործը հաջողությամբ վարել հնարավոր չէ առանց կառավարման գիտության և առաջավոր փորձի յուրացման, առանց մասնագիտական գիտելիքների մշտապես թարմացման, քանի որ ինֆորմացիայի աճի ներկայիս տեմպերի պայմաններում դրանք բարոյապես արագորեն հնանում են: Յուրաքանչյուր ղեկավարի պարտականությունն է խոր կուսակցականությունը զուգակցել ձեռնահասության և լայն մտահորիզոնի հետ, կարգապահությունը՝ ստեղծագործական նախաձեռնության հետ, կոլեկտիվի վրա հենվելու ունակությունը՝ անձնական բարձր պատասխանատվության հետ, գործարարությունը՝ աշխատանքի վերջնական արդյունքները տեսնելու ունակության հետ: Այդ հատկանիշներն ինքնին չեն առաջանում, դրանք ձևավորվում և զարգանում են հաստատակամ ուսման, ամենօրյա փորձի շնորհիվ:

Մեր երկրում ստեղծվել և կատարելագործվում է ղեկավար կադրերի ուսուցման համակարգը: Գործում են որակավորման բարձրացման տասնյակ ճյուղային ու միջճյուղային ինստիտուտներ, բուհերին կից՝ բազմաթիվ ֆակուլտետներ:

Մոսկվայի Ս. Օրջոնիկիձեի անվան կառավարման ինստիտուտն սկսել է տալ արտադրության կառավարման կազմակերպման ուղղվածությամբ ինժեներների շրջանավարտներ: Մասսայական են դարձել կատարելագործման դասընթացները, որոնցում ամեն տարի սովորում է միլիոնից ավելի մարդ: Նրանց տեսական մակարդակի բարձրացման կենտրոններն են մարքսիզմ-լենինիզմի համալսարանները:

Տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական խնդիրների բարդացումը և, որպես հետևանք, ուսումնական նոր առարկաների ու դասընթացների երևան գալը, ինչպես նաև հների ծավալի մեծացումը հարուցում են կառավարման ուսուցման արդյունավետ նոր մեթոդների որոնման անհրաժեշտություն: Այդ պրոբլեմը միանգամայն հրատապ է, և ուսումնական նոր նյութերի շարադրումն էլ պետք է իրականացվի ծրագրի յուրացման ժամկետների մշտական կրճատման առկա միտումով: Վերջին ժամանակներս ավելի ու ավելի մեծ ուշադրություն է դարձվում ոչ միայն ուսուցման բուն բովանդակությանը, այլև՝ մեթոդներին: Փորձը ցույց է տալիս, որ առավել արդյունավետ են այնպիսի մեթոդներն ու գործելաձևերը, որոնց դեպքում ակտիվ մասնակցություն են ունենում իրենք՝ սովորողները: Մասնագետների պատրաստման բարձր որակ ապահովելը մեր օրերում անհնարին է առանց բուն սովորողների գիտակցական ակտիվության ուժեղացման: Այսօր կարևոր խնդիր է դառնում ստեղծագործաբար դատելու ունակ մասնագետի դաստիարակումը:

Ներկայումս փորձեր են արվում ուսումնական պրոցեսի կազմակերպման խստորեն կարգորոշված եղանակից անցնելու դեպի ակտիվ, խաղային, իմացական, ստեղծագործական աշխատանքի համար պայմաններ ստեղծող մեթոդների: Վերջին տարիներին ավելի ակնհայտ է դրսևորվում այդպիսի անցման միտումը:

Ուսումնական պրոցեսի ակտիվացման, ուսուցանողի և ունկնդրի միջև փոխըմբռնման հաստատման փորձեր կատարվել են ուսուցման ավանդական մեթոդների շրջանակներում, որոնց հիմք են ծառայել դասախոսություններն ու սեմինարները: Արդյունքում ի հայտ եկան պարապմունքների այնպիսի ձևեր, ինչպիսիք են դասախոսություն-զրույցները, որոնցում թույլատրվում և խրախուսվում էր ունկնդիրների հետ դասախոսների երկխոսությունը. սեմինարները, որոնց նախորդում էր առանց դասախոսի մասնակցության ունկնդիրների անհատական և խմբային աշխատանքը. բարդեցված լաբորատոր պարապմունքները և այլն: Սակայն հին մեթոդների պարզ վերափոխումը չապահովեց նոր խնդիրների հաջող լուծումը:

Մասնագետի պատրաստման պրոցեսը կարելի է պայմանականորեն բաժանել երեք խոշոր փուլերի: Առաջինի ընթացքում ապագա մասնագետին տրվում է այն օբյեկտների նկարագրությունը, որոնց հետ նա պետք է առնչվի իր մասնագիտական գործունեության պրոցեսում: Երկրորդի ժամանակ անհրաժեշտ է նրան սովորեցնել

ինֆորմացիայից: Այն կարող է հանգեցնել ոչ ճիշտ հետևության: Ղեկավարը պետք է դատի լայնորեն ու խորությամբ, ցանկացած երևույթ քննության առնի այլ երևույթների հետ օրգանական միասնության մեջ:

Գործնական խաղին կարող է մասնակցել մի քանի մարդ: Արդյունքը՝ խնդրի կոլեկտիվ լուծումն է: Կոլեկտիվ լուծման դեպքում չի բացառվում միանձնյա որոշման ընդունումը, բայց այն պարտադիր կարգով քննարկվում է, եթե հարկ է, ճշտվում է: Յուրաքանչյուր խաղ միանգամայն անհատական է: Դրանց որոշ մասը տևում է մի քանի ժամ, մյուսները՝ մի քանի շաբաթ: Այդ կախված է խնդրի պայմաններից, այն նպատակներից, որոնք դրված են մասնակիցների առջև:

Ուսումնական պրոցեսում գործնական խաղերի կիրառման գծով կուտակված փորձը թույլ է տալիս սահմանել դրանց անցկացման որոշակի կարգ:

1. Խաղի մեջ մտնել: Նախ՝ մասնակիցներին պարզաբանվում են խաղի նպատակներն ու խնդիրները, ցույց են տրվում կառավարման այն օբյեկտներն ու մակարդակը, որոնք պետք է նմանակվեն խաղի պրոցեսում, պարզվում է խաղն սկսելուց առաջ ստեղծված ելից դրությունը:

2. Խմբերի կազմավորում: Խմբերի կազմավորման սկզբունքները կարող են լինել տարբեր: Այդպես կարելի է խմբեր կազմավորել ազատակամ մեթոդով, այդ թվում մասնակիցների ցանկությամբ, նախապես նշանակելով խմբավար կամ առանց նրա: Այդ մեթոդն օգտագործվում է համեմատաբար ոչ բարդ խնդիրների լուծման ժամանակ: Մյուս միջոցն է խմբի կազմավորումն ըստ զբաղեցրած պաշտոնների (արտադրամասերի պետեր, ծառայությունների ղեկավարներ և այլն): Կարելի է խմբերը կազմավորել՝ միավորելով արտադրության մասշտաբներով, բարդությամբ, տեխնիկական ու կազմակերպական մակարդակով մոտ ձեռնարկությունների աշխատողներին: Այդ դեպքում հաջողվում է պարզել համանման խնդիրների լուծման յուրահատկությունը՝ ըստ արտադրության առանձնահատկությունների և, հետևաբար, առավել հանգամանորեն քննության առնել այնպիսի հարցեր, որոնք խմբի ստեղծման այլ տարբերակների դեպքում չեն քննարկվում: Խմբերից յուրաքանչյուրը, ստանալով առաջադրանքը, աշխատում է մեկուսի՝ հարաբերության մեջ չմտնելով մյուս խմբերի հետ:

3. Խաղի կարգորոշում: Գործնական խաղը յուրահատուկ պրոցես է, դրա համար էլ հազիվ թե հնարավոր լինի բոլոր խաղերի համար մշակել ինչ-որ ընդհանուր կանոնակարգ: Յուրաքանչյուր կոնկրետ դեպքում մշակվում է խաղի անցկացման ռացիոնալ ժամանակ: Շատ կարևոր է ճիշտ որոշել այդ ժամանակը: Խաղն սկսելուց առաջ մասնակիցներին ծանոթացնում են կանոնակարգի հետ, որպեսզի խմբերից յուրաքանչյուրը կարողանա ճշգրիտ պլանավորել իր աշխատանքը:

4. Խաղի պրոցեսում շատ բան պայմանավորված է մասնակիցների կազմակերպվածությամբ: Հենց սկզբից խաղավարը մշտապես վերահսկում է դրա ընթացքը և միշտ պատրաստ է միջամտելու՝ տարբեր բացասական կողմերի վերացման համար: Շատ բան է կախված նաև խմբավարից, որը հետևում է խաղի կարգ ու կանոնին:

5. Խաղի արդյունքների ամփոփման ձևերը, որպես կանոն, տարբեր են, բայց դրանց բուն էությունը մեկն է՝ խաղավարը գիտականորեն հիմնավորում է այն միակ արդյունքը, որին պետք է հանգեն խաղի մասնակիցները:

Խաղի ժամանակ պետք է ապահովվեն գործնական իրադրությունը և ժամանակի առավելագույն արդյունավետ օգտագործումը՝ ունկնդիրների ամենաակտիվ մասնակցությամբ: Հատուկ ուշադրություն պետք է դարձնել խաղի արդյունքների ամփոփմանը, որոշումների ձևակերպմանը և դրանց հիմնավորումներին:

Գործնական խաղերի մշակման ու կիրառման հարուստ փորձ է կուտակվել Մոսկվայի Ս. Օրջոնիկիձեի անվան կառավարման ինստիտուտում: Կառավարման մասնագետների պատրաստման մեթոդիկան նախատեսում է դասախոսությունների զուգակցումը ուսուցման տարբեր ակտիվ ձևերի հետ: Այստեղ «Կառավարման կազմակերպումը շինարարությունում» ամբիոնում մշակվել է գործնական խաղերի համակարգ, որը ներառնում է մի շարք տարրեր:

«Կազմակերպական վերլուծության պրոցեսի մոդելավորում» խաղի նպատակն է. օգտագործելով ցանցային մոդելների կառուցման սկզբունքները, ինչպես նաև շինարարական ձեռնարկություններում ու կազմակերպություններում աշխատանքի փորձը, սովորեցնել կառավարման համակարգերի կազմակերպական վերլուծության



ցանցային գրաֆիկների կառուցում ու հաշվարկում, որը ցանկացած մակարդակի ղեկավարին թույլ կտա խորապես հասու լինել արտադրության էկոնոմիկային, արդյունավետորեն ներգործել սահմանված պլանային առաջադրանքների կատարման ընթացքի վրա:

«Կառավարման կազմակերպման գծով մասնագետին ներկայացվող պահանջը» խաղի ընթացքում մասնակիցները փորձաքննական արարողությունների միջոցով ի հայտ են բերում համապատասխան պրոֆիլի մասնագետի համար անհրաժեշտ հատկանիշներ:

Կառավարվող համակարգի վրա ցանկացած ներազդում կարող է իրականացվել միայն դրա ֆունկցիաների միջոցով, որոնք իրենցից ներկայացնում են այդ ոլորտում աշխատանքի բաժանման ռացիոնալ ձևն ապահովող գործերի յուրահատուկ տեսակներ: Կառավարման ֆունկցիաները փոխկապակցված են, դրանք ձևավորվել են ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատանքի բաժանման շնորհիվ:

Նայած աշխատանքների բարդությանն ու ծավալին՝ յուրաքանչյուր ֆունկցիա ձեռնարկությունում կարող են իրականացնել մեկ կամ մի քանի մարդիկ և կատարող: Ըստ որում, դրանք կարող են բաժանվել նաև ենթաֆունկցիաների: Բացի այդ, ֆունկցիաների կատարման պրոցեսը բաժանվում է մի շարք գործառնությունների:

Ձեռնարկությունների ղեկավարների համար կարևոր է ապահովել կառավարման աշխատանքի բաժանում, որպեսզի բոլոր ֆունկցիաները կատարվեն առավել կոորդինացված և փոխկապակցված: Դա հնարավորություն կտա կազմակերպել կառավարող համակարգի տարբեր տեղամասերում առանձին ֆունկցիաների առավել ռացիոնալ զուգակցում: Բացի այդ, ավելի հստակորեն են սահմանվում կառավարման ապարատի աշխատողների իրավունքներն ու պարտականությունները:

Կառավարման խնդիրների կարգորոշումը հստակորեն սահմանում է, թե ո՞վ, ե՞րբ և ի՞նչ պայմաններում է լուծում այս կամ այն խնդիրը և դրանց իրականացման համար ո՞վ է պատասխանատվություն կրում: Արտադրական կոլեկտիվի և, ամենից առաջ, կառավարման ապարատի կողմից արտադրության մեջ իրականացված փոփոխությունները, կառավարման կանոնակարգի առկայությամբ, թույլ են տալիս հիմնավորված կերպով դնել այն հարցը, թե կառավարման ապարատում ինչ լրացուցիչ խնդիրներ պետք է լուծվեն և ում կողմից: Կանոնակարգերի համակարգի ձևով կազմավորված կառավարման ռացիոնալ կազմակերպումը խախտելու դեպքում անմիջապես խախտվում է կառավարման ընդունված կարգը: Եվ, վերջապես, կարգորոշված համակարգն ակտիվորեն ներգործում է արտադրության վրա, ի հայտ բերելով նեղ տեղերը և կառավարման ապարատը նպատակաուղղելով դրանց վերացմանը:

Կարգորոշումը ոչ միայն սահմանում է կառավարչական պրոցեսի գործառնության կարգը, այլև որոշում է արտադրության կառավարման օբյեկտիվորեն անհրաժեշտ խնդիրների բացահայտման հաջորդականությունը, կազմավորում է դրանց լուծման պայմանները: Արտադրության զարգացման առաջադիմական միտումների շնորհիվ առաջացած փոփոխությունները կարող են արդյունավետորեն իրականացվել միայն այն դեպքում, եթե դրանք հաշվի առնվեն կառավարման ամբողջ ցիկլով:

Մեքենայական գործնական խաղերի իրականացման համար շատ հարմար և հեռանկարային է փոքրաչափ և միկրոէլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործումը, որոնք ավելի ու ավելի լայն կիրառում են գտնում կառավարչական անձնակազմի աշխատանքի պրակտիկայում:

Հայտնի է, որ խաղերը կարելի է օգտագործել տարբեր նպատակներով, սակայն դեռևս, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, դրանց մեծ մասը մեզ մոտ նախատեսված է ուսուցման համար: Այժմ գործնական խաղերը ավելի լայն կիրառում են գտնում ոչ միայն ուսումնական, այլև տնտեսավարման պրակտիկայում:: Հետևաբար, անհրաժեշտ է, որպեսզի կառավարման կազմակերպման մասնագետները կատարելապես տիրապետեն հետազոտական ու նախագծային նպատակներով գործնական խաղերի օգտագործման մեթոդներին: Չէ որ, նախքան արտադրության մեջ որոշում կայացնելը, հարկավոր է այն ստուգել, խաղարկել սեղանի շուրջը: Գործնական խաղերը օգնում են ձեռնարկությունների ղեկավարներին, վարպետներին, բրիգադավար-

ների՝ ավելի լավ հասկանալ փոխադարձ կապերը ժամանակակից բարդ արտադրությունում:

Հայտնի է, որ շատ նորամուծություններ, որոնք կոչված են կատարելագործելու կազմակերպական համակարգի աշխատանքը, մնացել են անիրագործելի, այսպես կոչված, «հոգեբանական» արգելքը հաղթահարել չկարողանալու պատճառով: Այդ արգելքի հաղթահարման առավել արդյունավետ միջոցներից են գործնական խաղերը:

1983 թվականին «Էկոնոմիկա» հրատարակչությունը լույս ընծայեց **Տնտեսական իրավիճակներ: Գործնական ձեռնարկ** գիրքը, որը կօգնի խորապես ծանոթանալու «խաղերի» մշակման ու օգտագործման մեթոդիկային:

Մամուլում երևան են գալիս ավելի ու ավելի մեծ քանակությամբ հրապարակումներ, որոնք լուսաբանում են գործնական խաղերի օգտագործումը ինչպես ղեկավարների ու մասնագետների որակավորման բարձրացման, այնպես էլ բուհերում ու տեխնիկումներում ուսանողների ուսուցման ժամանակ:

«Խաղերի» մշակման և օգտագործման բնագավառում աշխատանքները տարվում են ժողովրդական տնտեսության ղեկավար աշխատողների ու մասնագետների որակավորման բարձրացման ուսումնամեթոդական վարչության կողմից մշակված «Գործնական խաղեր» նպատակային ծրագրի շրջանակներում, ծրագրում ընդգրկված են ավելի քան հարյուր կազմակերպություններ:

Կանոնավոր կերպով (ՏՓԽ-ի շրջանակներում) անցկացվում են գործնական խաղերի մշակողների սեմինարներ: Եվրոպայի սոցիալիստական երկրների, Անգլիայի, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, ԳՖՀ-ի բուհերում խաղային մեթոդների ուսումնասիրությունը մտցված է ուսումնական ծրագրերում:

Խաղերի մշակման և ուսումնական պրոցեսում ներդրման նպատակով Մոսկվայի կառավարման ինստիտուտում ստեղծվել է գործնական խաղերի կենտրոն, որը կանոնավոր կերպով լույս է ընծայում տեղեկատու բյուլետեն՝ լուսաբանելով դրանց մշակման ու օգտագործման բնագավառում Մոսկվայի կառավարման ինստիտուտի և երկրի մյուս բուհերի գործունեությունը: Կենտրոնի հետ արդեն համագործակցում են երկու հարյուր կազմակերպություններ: Համատեղ ջանքերով կազմավորվող, կարելի է ասել՝ գործնական խաղերի համամիութենական «բանկում» այժմ հաշվվում է մոտավորապես երկու հարյուր խաղ:

Խաղային մեթոդի արդյունավետության բարձրացումը պահանջում է գործնական խաղերի և դրանց մշակման մշտական կատարելագործում: Այսօր պետք է ուշադրությունը կենտրոնացնել երկու կարևորագույն խնդիրների զուգահեռ լուծման վրա: Առաջին՝ շարունակել գործնական խաղի արդյունավետ ներդրման աշխատանքները: Երկրորդ՝ հասնել այն բանին, որպեսզի տնտեսական ղեկավարները հմտորեն տիրապետեն «խաղերի» օգտագործման մեթոդներին՝ որպես կառավարման կազմակերպական համակարգերի կատարելագործման միջոցի:

---



# ԴԵՊԻ ԽՈՐՔԸ ԿԵՑՈՒԹՅԱՆ

**...Ուզում եմ արձակել... չբացված,**
**սերմի մեջ խեղդված ծաղկի բույրը...**
**ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ**

ՀԱՅ ՍՈՎԵՏԱԿԱՆ գրականության անդաստանում 60—70-ական թվականներին փայլատակեցին ստեղծագործական երկու մեծ անհատականություններ՝ Պարույր Սևակը պոեզիայում, Հրանտ Մաթևոսյանը՝ արձակում: Նրանք նոր չափանիշներ սահմանեցին հայ սովետական գրականության մարզում, հարստացրին սոցիալիստական արվեստի գինանոցը:

Հրանտ Մաթևոսյանը 1984-ին արժանացավ ՍՍՀՄ պետական մրցանակի: «Համամիութենական ընթերցողի սեփականություն են դարձել Հ. Մաթևոսյանի վիպակներն ու պատմվածքները, որոնք տեղ են գտել **Ծառեր (Քո ցեղը)** ժողովածուի մեջ,— իր զրույցում ասաց ՍՍՀՄ գրողների միության վարչության առաջին քարտուղար Գ. Մ. Մարկովը:— Դրանցում ուշագրավ են հասարակ աշխատավորների բնավորությունների կերտման վարպետությունն ու ճշմարտությունը, հեղինակի լեզվի գունեղությունը: Այս տարվա մրցանակին արժանացած գրողը հանդես է գալիս որպես հարազատ Հայաստանի ժողովրդի աշխատանքային գործերի տարեգիր»:

Հրանտ Մաթևոսյանի արվեստը հասկանալու համար ամենից առաջ անհրաժեշտ է ըմբռնել պատմաշրջանի ոգին, իմանալ այն միջավայրը, ուր անցել են նրա մանկությունն ու պատանեկությունը, ուր կազմավորվել, ձևավորվել, իմաստավորվել են գրողի գեղագիտական-փիլիսոփայական հայացքները:

XX դարի երկրորդ կեսը հագեցած է գիտատեխնիկական մեծ հայտնագործություններով, հասարակական-քաղաքական աննախադեպ իրադարձություններով: Եթե առաջներում փաստերը կուտակվում էին դանդաղ, որևէ հարցի լուծումը հասունանում էր դարերով, բնորոշն այժմ կայծականային արագությունն է. շատ անգամ միտքը հապաղում է հասնել փաստերի ընթացքին: Տիեզերական տարածությունները, միջուկային աշխարհը թափանցելու գիտական խիզախումները, կիբեռնետիկայի, գենետիկայի նշանակալի նվաճումները խորտակում են մարդկային հնօրյա պատկերացումների դարավոր պատնեշները, արմատապես փոխում մեր ընկալումները ժամանակի և տարածության մասին, նոր ու անհայտ աշխարհներ բացում, լուծում կյանքի շատ առեղծվածային գաղտնիքներ:

Արդ, գիտության զարգացման, գիտատեխնիկական հեղափոխության ընթացքը հղի է հույսի մեծ ակնկալիքներով, այլև՝ տագնապներով, մարդու «ողջ էությունը համակող սարսափով, հոգեկան ուժերը և հավատը խլող անհուն հուսահատությամբ» (Չինգիզ Այթմատով, «Литературная газета», 1978, № 13):

Պատահական չէ, որ Պարույր Սևակը տագնապով գրում է.

*Ի՞նչ է սպասվում այս մոլորակին,—*
*Ի՞նչ պատասխանես։*
*Ի՞նչ է լինելու այս աշխարհի հետ,—*
*Ինչպե՞ս իմանաս։*
*Ի՞նչ է բուսնելու այս թշվառ հողին։*
*Եվ ի՞նչ լեզվով են խոսելու այստեղ...*

XX դարի համամարդկային բարդ պրոբլեմները, հասարակական զարգացման բարդ ընթացքը, բնականորեն, շիկացնում են հասարակական-քաղաքական,այլև գրա-

Իշխան, քաղաքի փողոցում կանգնիր ու շվշվացրու: Գիշերներն արթնացիր ու պատուհանից հովվական սուլելով՝ ուղեկցիր սպանդանոց քշվող հոտը»:

Ծմակուտի քայքայման, «հովիվների հանրապետության» փլուզման շուրջը Մաթևոսյան արվեստագետի խոհերն ու զգացմունքները պարուրվում են ցավագին գալարումներով: «Քննիչն այստեղ ինչացո՞ւ է,— ասում է նա,— դու ես, քո աշխատանքը, քո սարերը, քո Ռևազը, քո ոչխարը, քո Գետամեջը»: Բայց այդպես չէ. Ծմակուտի հինավուրց կարերը պատմության հորձանուտի մեջ քանդվել էին, «հովիվների հանրապետությունը» եղծվում էր, սկսվում էր հովիվների հոսքը դեպի քաղաք, իսկ գողությունը...

Ծմակուտը Ռոբինզոնադ չէ, հարյուրավոր թելերով, օրգանապես կապված է գյուղերին ու քաղաքներին՝ սնում է նրանց, սնվում նրանցից: Ահա վաթսունական թըվականների նրա պատկերը. «Այս գյուղը հազար թելերով կապված է աշխարհին. հեռախոսով, հոսքագծով, փոստով, բրդի, մսի, յուղի մթերման, կոոպերացիայի խանութով, ուսուցման ծրագրերով. ակումբային ուսումնարանն այս գյուղին տալիս է թատրոնից ու գրքից հասկացող շրջանավարտներ, այս գյուղը մոտիկ ու հեռու գյուղերին է ուղարկում լխտիկ հարսներ, որոնք եղանը ձեռից չեն գցում մինչև ընդհուպ ծննդաբերելը... այս գյուղը համալսարաններին տալիս է ընդունակ աշակերտներ, բանակին՝ կենսուրախ և կարգապահ ռազմիկներ, կինոգնումների գրասենյակն այստեղ է ուղարկում ֆիլմեր, լրագրերը՝ թղթակիցներ և այլն»:

Ծմակուտյան այս պատկերը ևս հետագայում ամբողջությամբ չքանում է. այլևս չեն գործում դպրոցը, ակումբային ուսումնարանը. լքված է կոլտնտեսության գոմը, ամայացել են դասասենյակները, փողոցները. գյուղը դարձել է գերեզմանոց:

Մաթևոսյան արվեստագետը, սակայն, չի նահանջում, փորձում է վերստին դիմակայել հայրենի գյուղում ծավալվող սոցիալ-բարոյական չարիքներին:

Ներքին այդ համոզումով է, ահա, ըստեղծվում **Տերը** (1983) կինովիպակը՝ գրողի տաղանդի նոր փայլատակումը, գեղագիտական-փիլիսոփայական հայացքների մասշտաբային նոր ընդհանրացումը: **Տերը** գյուղի սոցիալ-բարոյական հեղաբեկումների գեղարվեստական տարեգրությունն է: Վիպակն ստեղծված է հրայրքով. յուրաքանչյուր էջ, պատկեր, կերպար դրսևորում է սոցիալ-բարոյական սուր հակասություններ, բախումներ: Հեղինակի ամենամեծ նվաճումը, իհարկե, Ռոստոմի կերպարն է. նրա շուրջն են պտտվում Ծմակուտի ողջ իրադարձությունները այն պահից, երբ գյուղի ղեկավարությունն անցնում է հարևան մեծ գյուղին՝ Հովըտին, ավելի ու ավելի սաստկացնելով քայքայման պրոցեսը:

«Ինչպես որ գերեզմանոցն է պառավում, ինչպես որ մեղվի փեթակն է քաղցած ձմեռվա մեջ հանգչում— մենք դեռ չէինք հավատում,— խորհում է Ռոստոմը,— որ դպրոցն այդպես մարել է, կյանքն իր հին կեղևը այստեղ լքել, ու ինքը հեռացել է քաղաք, բայց այդ այդպես էր. մեր ձիու ոտնաձայնը ղնդում էր ամայի դասասենյակներում ու դռներին, լքված դարբնոցում ու հին կալերում, և դա սարսափելի էր. հեքիաթի տղան ասես շրջում էր հեքիաթի քարե քաղաքում...»:

Ռոստոմը խոսում է հոգնակի դեմքով՝ **մենք**-ով, **մեր**-ով, ասես, իր խոսքը դարձնելով ավելի ծանրակշիռ, գործողություններին տալով հավաքական բնույթ: Վիպակի շարժիչ ուժը ռոստոմյան մենախոսություններն են, երկխոսությունները, որ բովանդակում են պատասխան լիցք:

Դառնալով անտառապետ՝ «բոլոր անտառների ու հողերի տիրակալ», Ռոստոմը փայփայում է այն նվիրական իղձը, որ Ծմակուտը դեռևս կարելի է կյանքի կոչել, որ այնտեղ կարող են վերստին հնչել մեծ հարսանիքների զվարթ կանչերը: «Մի բան, ախր, չի կարող պատահել, որ լինի ու հանկարծ չլինի,— չկա, չի եղել,— փիլիսոփայում է նա,— այդ պառավ ծառերի, քանդված չափարների, ամայի դռների, հին գոմերի ու կալի երեկվա ձայները ախր դեռ մեր ականջներում էին»:

Գյուղի վերածննման գերազնիվ մղումով ու համոզումով էլ, ահա, Ռոստոմն սկըսում է աշխատել. «Այս երկիրը դեռ անտեր չէ, կներե՞ք», «Ծմակուտը դեռ չի վերացել». «— **Էս երկրում ինչ որ լինում է՝ ամեն քարաթուփի համար մենք պատասխանատու ենք»** (ընդգծումը մերն է.— Հ. Ղ.),— ասում է Ռոստոմը՝ իր ծառայությունը համարելով հրամայական պահանջ, մի վսեմ հավատամք Ծմակուտի ծաղկման համար, սերունդների երջանկության համար, հայրենիքի բախտի համար: «...Դուք ո՞ւմ առաջ եք ծառայության կանգնել,— նախատում է Ռոստոմը գողերից մեկին—



...ստար, անհայրենիք թզուկի առաջ Ծմակուտի կաղնին քսան մանեթով մեկնում եք, գիշերը կիր վառելու եք կանգնում: Ծմակուտում սարերի արծաթե քուռակը մատուցում եք Հովըտեցի չխմողի՝ լակողի ձեռը— ձեր երեխեքի երկիրը քսան մանեթով ծախում, էգուցվա օրը ձեր ժառանգին հայրենիքից զրկում ու ասում եք՝ երեխեքի առաջ եք ծառայության կանգնել»:

Ռոստոմը առավել սուր կրքոտությամբ ծառանում է միացյալ գյուղերի կոլտնտեսության նախագահի դեմ. «Էս դրախտի պես շեն գյուղը կերար, կործանեցիր... Գետափի ծառերն ու ջաղացատեղը... ո՞ւմ ես ծախել...»: Հարձակումից խեղճացած նախագահը փորձում է արդարանալ, իբր ինքը անզոր է վերադասի հանդեպ. «սոխի գլուխ, զերո», զգուշացնելով Ռոստոմին, որ առանձնատուն կառուցողը «պինդ կրունկ է...», «քեզ անտեղի տակը չգցես». Ռոստոմը չի նահանջում, շարունակում է գրոհը. «...դու մի ամբողջ դրոշակակիր գյուղը ոչնչացրիր... ցիրկ ենք՝ պատճառը դու ես, ցավ ենք՝ մեղավորը դու ես, տեղաշորն ընկած մեռնում ենք՝ մարդասպանը դու ես...»: Այնուհետև՝ «Ծմակուտը իմ հայրենիքն է, իմ երկիրն է..., իրավունքներդ էս գյուղից քաշիր, կենտրոնին ասա՝ հարբեցող եմ՝ ի վիճակի չեմ, մարդ եղիր...»:

Միացյալ գյուղի կոլտնտեսության ղեկավարը, սակայն, «մեր հավատամքը, մեր աղոթքը,— ասում է Ռոստոմը,— կես վայրկյան էլ չհարգեց», Ծմակուտից մուրացած սննդամթերքով, ոչխարներով ծանրաբեռն մեքենայով սլացավ դեպի կենտրոն:

Հեղինակը Ռոստոմի միջոցով մեր ուշադրությունը կրկին սրում, կենտրոնացնում է սոցիալ-բարոյական չարիքների՝ անբանության, կաշառակերության, քծնանքի, սպառողական հոգեբանության, կարիերիզմի, քաղքենիության, անտարբերության, անտերության դեմ, չարիքներ, որ գյուղում աճում են մոլախոտերի փարթամությամբ: Ռոստոմը ֆանատիկ հայրենասեր է, տենդագին ձգտում է անեղծ պահել հայրենի գյուղը, հողը, հայրենի բնությունը, ընդերքը, օգտակար դառնալ հայրենի բնակիչներին: Նրա համար անտանելի են գողերը, գյուղը լքողները, անտառը նվաճող թզուկները, նաև երկրաբանները, հովեկները, մարդիկ, ովքեր Ռոստոմին ներկայանում են որպես բնության ավերիչներ, մատաղ սերնդի ապականիչներ՝ անհայրենիք, անապագա, անտոհմ մարդիկ: «...Էս աստծու տակ էլ մաքուր անկյուն չեք թողել»,— զայրույթով ասում է նա: Խստաշունչ մի պարզությամբ, Ռոստոմը գիտակցում է, որ Ծմակուտի տերերը այսօր իսկ թզուկներն են, որ գյուղի լքումը սոցիալական խոր արմատներ ունի:

«Հետո տղերքը— որը ժողովրդի մեջ բաց ուշունցով՝ թե խեղճ այս գյուղում շատ տառապել ու չնչին է վաստակել, որը տխրությամբ, անհուն տխրությամբ՝ որ հայրենիքից հավիտյան հեռանում է, որն էլ լռումունջ— քոչեցին քաղաք, ծափածիծաղն այս գյուղից կտրվեց, դպրոցը լռեց, **և գետափնյա այգին արդեն որևէ մեկինը չէր— անցնող-դարձող բոլորինն ու ոչ մեկինը»:**

Ռոստոմը ետդարձի կոչ է անում դառնացած ոգով. «դարձել ենք գերեզմանոցի պահակ, եկեք էստեղ, ապրեցեք էլ, ձեր հիշողությունները հիշեցեք էլ»: Բայց այլ է պատմական իրողությունը: Մաթևոսյանի ստեղծագործության մեջ արդեն իսկ հնչում են ողբերգական նոտաներ. «Է՜, Ծմակուտը քանդվում էր ու հույս չկար, թե ապագայում դարձյալ դպրոց, զանգ, հարսանիք, կռիվ ու գյուղխորհուրդ կլինեն— ամայություն» («Սովետական գրականություն», 1982, № 5, էջ 70): «Վաղվա օրը,— եզրակացնում է նա,— մնալու են Ծուշանը, Աղունը, Սիմոնը՝ երեք մենակ կկու...» (**Տերը**): Ծմակուտը բացառություն չէ, ընդհանրացնում է Մաթևոսյանը «Օձունի ու Դսեղի նման քաղաք-գյուղեր են ամայանում, մեջները մի հին Ծմակուտի ուժ չի մնացել, Ծմակուտը ո՞վ էր, որ դիմանար»:

Սոցիալ-բարոյական չարիքների դեմ Ռոստոմը մարտնչում էր զոր ու գիշեր: Եվ որքան մարտնչում էր, այնքան չարիքները ծավալվում ու խորանում էին, որքան բաց ճակատամարտ էր տալիս, այնքան թշնամությունը սրվում էր ու սաստկանում:

«— Մարդ եղիր... մա՜րդ,— փիլիսոփայում է գողերից մեկը՝ դիմելով Ռոստոմին,— մարդ եղիր... ժողովուրդը պիտի ապրի: Իրա կարգը ժողովուրդը ինձանից ու քեզանից չի հարցնելու»: «Ժողովուրդը գազազած ապրում է— դու քո հին ձիու վրա ես: Գողանում էլ են, լրբանում էլ են...»,— Ռոստոմին զգուշացնում է կինը:

«— Կվառեն տնակդ էլ, տունդ էլ»,— Ռոստոմին բարեկամաբար հասկացնում է Ծմակուտի խանութի գործակատարը, որի ճանապարհը փակել է Ռոստոմը, թույլ չի տալիս խմիչքը գյուղ տեղափոխել. «— Քու

գյուղն էստեղ ապրանք չունի,— բացատրում է գործակատարը,— շաքարն ու մակարոնը ղազախեցի սարվորի խնդրանքով է, խմիչքը՝ օտար մշակի, գյուղում մշակ կա..., իսկ գյուղի հոգսը,— ընդհանրացնում է նա,— պրծած պատմություն է, գերեզմանոցը հոգս չունի...»:

Ռոստոմն այդ բոլորը քաջ գիտեր, բայց շարունակում էր գործել անդադրում, փորձում էր կարգ հաստատել: Գիշերվա լռության մեջ անգամ նա որսում էր գողության չարագուշակ ձայները, ասես տեսնում էր գողին: Ահա ինքնաշեն, ողորմելի մի կըցասայլ՝ կաղնու հսկայական գերաններով բեռնած մի զարմանալի հնարագիտություն, «հիացմունք շարժող աշխատանք»: Գողը Ռոստոմի քրոջ որդին է՝ Ալբերտը: Նրանց միջև սկսվում է «բարեկամական» զրույց՝ հանգիստ, ցածր, «բայց երկուսիս ձեռքին էլ, կարծես, բաց դանակ կա»,— ասում է Ռոստոմը: Ալբերտը ջանում է քեռուն համոզել, որ գողությունը գիշերով է կատարում, որպեսզի նա չնկատի, չտեսնելու տա, բայց Ռոստոմը, ասես, չէր հասկանում, շարունակում էր բարոյախոսել. «Երկիրը Ռոստոմինը չի, քոնն է, երկրում քո երեխեքն են ապրելու, Ռոստոմի կյանքն իրենով վերջանում է, Ռոստոմը շարունակություն չունի», սաստելով քրոջ որդուն ասում է. «— **Էս երկրում պիտի կարգ լինի՞**, թե չէ»: Ի՞նչ կարգ. ...բանդագուշանքի մեջ Ալբերտը կացնահարում է քեռուն և քեռակնոջ օգնությամբ նրան տեղափոխում Հովըտի հիվանդանոց:

«— Ունորի առաջ կարծում է իմ հանույքի համար եմ ծառայության կանգնել,— ճանապարհին քեռակնոջը գանգատվում է Ալբերտը.— ո՞ր շանորդին կուզենա իրա երկիրը թշնամու ձեռը տա. ծերը ծերին զոռով եմ հասցնում. փող է, բերանդ է խցկում, դե մերժիր, դու մերժես՝ ուրիշ էնքան ցանկացող կա՜ա»:

Այսուհանդերձ, Ալբերտն իր գողացած գերանները ուղղաթիռով տեղափոխում է Հովըտի սղոցարան, «և մղձավանջի նման ծանր՝ գերանն ահա սլանում է հին գյուղի երկնքով»: Հիվանդանոցում պառկած Ռոստոմը նկատում է՝ ցնցվում, ցասումնալից սլանում է սղոցարան և քարուքանդ անում այն: Սարսափահար հովըտեցիները փորձում են հանգստացնել Ռոստոմին. «— Ծմակուտի մեր ախպեր Ռոստոմն է». «Մեր ախպերը էն գերանն է,— ասում է Ռոստոմը,— էն երեխան, էն ոչխարը, էն սարերից դենը ինչքան բարձր բարոյական բան կա՝ մեր ախպերն է. մենք գողին գործակից ախպեր չունենք պառավների հավարներում. կճզմե՜նք»:

Բայց, ինչպես ասում են, ուրբաթը շուտ է գալիս, քան շաբաթը. Ռոստոմին են ճզմում «պետականորեն». սղոցարանի միջադեպից հետո, տունդարձի ճանապարհին հենց Ռոստոմն ստանում է իր հեռացման հրամանը. «Հաշվի առնելով, որ իր անհաշտ բնավորության պատճառով անտառապետ Ռոստոմ Սարգսյանի և տեղական բնակչության միջև ստեղծված է կոնֆլիկտային իրավիճակ՝ ինչը որ փոխադարձ վտանգ է ներկայացնում երկու կողմի համար և մանավանդ վերոհիշյալով նույն Ռոստոմ Սարգսյանի անձի ապահովության տեսակետից նպատակահարմար է, որ նա **չզբաղեցնի**... և այլն»: Եվ այսպես, անտառապետ, ազնվացեղ Ռոստոմին փոխարինում է նրա քրոջ որդին՝ գող Ալբերտը:

Վիպակն սկսվում է անտառտնտեսության ղեկավարի՝ թզուկի աղջնակի երազհեքիաթով, ավարտվում երազ-հեքիաթի իրականացմամբ՝ Ծմակուտի գետափնյա առանձնատան կառուցմամբ:

Աշուն է: Մեր հին, հազարիցս բնակեցված, մաշված երկրի պատկերի առջև կանգնած պաշտոնազուրկ Ռոստոմը անմխիթար լաց է լինում «հոգին թարախակալված». «Անքննադատ ու անչար, հաշտ ու խաղաղ», նա ընդունում է նաև հեռու կիրճերում կուտակվող, խտացող, ծավալվող գործարանային ծխի գոյությունը: Եվ հանկարծ մասրենու բացատում նկատում է սպանված եղնիկի «արնոտ աղաքարն ու փորոտիքը... մենք խելագարվեցինք ու բղավեցինք,— ասում է նա,— ինչպես որ անլեզու անասունն է արյան հոտից խելագարվում... Այդ արյունը կարծես մեր արյունն էր, կարծես մեզ էին խփել»:

Սպանված եղնիկի հետքերը Ռոստոմին անվրեպ տանում են դեպի գետափնյա նորակառույց առանձնատունն այն պահին, երբ թզուկը շնորհակալական հաց էր տալիս ժողովրդին: Ռոստոմը ցասումնալից շուռ է տալիս եղնիկի մսից պատրաստված խորովածի «ամբողջ սիրուն շարքը» և նետվում դեպի թզուկը. «Քո կապած ջրում քեզ հիմի թխսի պես կխեղդենք», ահ ու սարսափ տարածելով շուրջը՝ «բոլորդ դավաճան ու թշնամի եք, բոլորդ, բոլորդ»,— լսվում է Ռոստոմի անամոք հառաչանքը: Եվ երբ երեք սև բաճկոնավորները փորձում են զսպել Ռոստոմին,



լսվում է թզուկի մեծահոգի հրահանգը՝ «թողե՛ք տրորի, հանգստանա, թողեք»:

Թզուկի հարյուրամյա մայրը, որ եկել էր որդու ուրախությունը կիսելու, օրհնելու նրա մեծ նվաճումները, հիացած որդու «ճարպկությամբ, շնորհքով», ձեռքը մեկնում է դեպի նորակառույց առանձնատունը և խորհրդավոր ասում. «Իմ հայրիկն էստեղ պալատ էր շինել...», ապա մի պահ կանգ է առնում, սուր նայում է ժողովրդին և բորբոքվում. «— վառեցիք, ներելու բան չի... Անպետք ժողովուրդ եք, վառեցիք հայրիկիս տունը»:

Ռոստոմի հերոսական արարքը արժանանում է ամենքի, նաև թզուկի հիացմունքին. «...Եվ մեր ետևից նայում էին բոլորը,— պատմում է Ռոստոմը,— և իր կամրջակի վրայից՝ թզուկը. մտահոգված թզուկը ոտքից ոտք փոխվեց և ռուսերեն ՏԱԿ արեց՝ ՏԱ՜ԱԿ... և կամրջակի վրայից թզուկի վերին գնահատականը մեզ.— տա՜ակ... Դրա նման տասը տղա լիներ՝ Ղարսը հիմա մերն էր»:

Ռոստոմը, իհարկե, խորն է զգում իր արարքների ողջ «անհեթեթությունը», սակայն չարիքների դեմ միշտ էլ մնում է անհանդուրժող, աննահանջ. դա նրա ներքին անզսպելի տարերքն է, գերազնիվ ոգու գեղեցիկ դրսևորումը:

Մարդկայնորեն կարելի է հասկանալ նաև հենց հովըտեցիների անվերապահ գովերգությունը սղոցարանն ավերակի վերածած Ռոստոմի մասին: «Գնա հազար տարի էլ ապրի՝ որ նրա նման ուղիղ մարդ աշխարհ բերես»:

Դպրոցական երեխաները՝ պայծառաչվի, մաքուր, զգոն, որ մերժեցին թզուկի հյուրասիրությունը՝ «թշնամանքով ու կասկածանքով», սակայն սիրով ու պատանեկան հոգու բովանդակ գեղեցկությամբ ընդօրինակում էին Ռոստոմին:

Իսկ Ռոստոմի քույրը ողբում, ողբերգում էր եղբոր կյանքի լեգենդը. «...իմ փաշա ախպեր ջան, իմ զորավար ախպեր ջան... Ո՜րբ ջան, զորքդ կորցրել, մենակ ես մընացել, ցա՜վըդ տանեմ... Բարձր բարոյական իմ ախպերը... Օրինակելի իմ ախպերը... էս ժողովրդի դատատու իմ ախպերը... ժողովրդի թիկունք իմ ախպերը...»:

Հարց է ծագում. **Տերը** կինովիպակը կարելի՞ է համարել սոցիալիստական արվեստի երկ, երբ դրական հերոսը կրում է պարտություն՝ որևէ օգնություն չստանալով ո՛չ համագյուղացիների, ոչ էլ ղեկավարության կողմից, երբ Ծմակուտը սոցիալ-բարոյապես քայքայվում է, ամլանում ու ամայանում: Այո՛, կարելի է. **Տերը** սոցիալիստական արվեստի ճշմարիտ, խորունկ ու մնայուն երկ է: Մեր կյանքի, Ծմակուտի սոցիալ-բարոյական արատների բացահայտումը, արատների դեմ մղած հերոսի մաքառումներն ունեն միայն **հանրային** սեփականության վրա կառուցված հասարակության **հաստատման** պաթոս: Մաթևոսյան արվեստագետը ընթերցողի ուշադրությունը կրկին բևեռում է դեպի մեր կյանքի ներսը, ռեալիստորեն ներկայացնում Ծմակուտի սոցիալ-բարոյական ներքին հակասությունները, այն «կենդանի հակասությունները», որ «շատ ու շատ անգամ ընդգծում էր Լենինը,— ավելի հարուստ, ավելի բազմակողմանի, ավելի բովանդակալից են, քան սկզբից կարող է թվալ մարդու բանականությանը» (**ԵԼԺ**, հ. 47, էջ 266):

Արտագնացությունը, գողությունը, կարիերիզմը, իրապաշտությունը մեր հասարակության օրգանիզմի այն խոցերն են, որ պետք է անհապաղ հեռացվեն անդամահատության սուր դանակով, քանի դեռ չեն վերածվել չարորակ խոցերի:

«Պատմական նոր փուլում սովետական հասարակության առջև կանգնող խնդիրները,— շեշտում է Մ. Ս. Գորբաչովը,— բացառիկ մեծ են... Կարևոր է ձեռնարկել անհետաձգելի և մեծապես նոր միջոցներ, որպեսզի սոցիալիստական տնտեսավարման, տնտեսական և սոցիալական կառավարման ձևերն ու մեթոդները համապատասխանեն արդի պայմաններին, ինչպես նաև հեռանկարային զարգացման պահանջմունքներին»: Սոցիալ-տնտեսական, սոցիալ-բարոյական այս հույժ կենսական պրոբլեմներն են մտահոգում Մաթևոսյան արվեստագետին:

Ամենահակասականը, անհարիրը, թերևս, այն է, որ մարդիկ շրջանցում, չարաշահում են սովետական օրենքները: Օրենքի ուժով դատարան են քարշ տալիս գյուղի աշխատունակ, ազնիվ մարդկանց (**Մենք ենք, մեր սարերը**), օրենքի ուժով փոքր գյուղը միացնում են մեծ գյուղին՝ փոքրը վերածելով կույր աղիքի: Օրենքի ուժով անտառտնտեսության ղեկավարը հրաշագեղ բնության սրտում կառուցում է սեփական առանձնատուն. օրենքի ուժով աշխատանքից հեռացվում է նաև սոցիալ-բարոյական չարիքների դեմ մարտնչող հերոսը՝ Ռոստոմը (**Տերը**):

Եվ բոլորը խոսում են օրենքից, օրինա-

կանությունից, և բոլորն են չարաշահում օրենքը... իսկ գյո՞ւղը... գյուղն իրոք գնում է անկումից-անկում:

«Ես էլ եմ օրենքի ձեռքին, Իշխան ջա՜ն,— արդարանում է քննիչը,— դու էլ ես օրենքի ձեռքի՜ն, բոլորս ենք օրենքի ձեռքին: Օրենքի՜: Ես չեմ լինի, դու չես լինի, օրենքը կլինի, օ՜րե՜նքը՜,— փիլիսոփայում է քննիչը:— Հանցանք ես գործում՝ պիտի տա՜ս պատասխան: Այսպես է, օրենք հնարողն է իր հնարածին պատասխան տալիս: Օրենքը վեր է ամեն ինչից» (**Օգոստոս**, էջ 56):

Ամլացվում է օրենքի ոգին, օրենքի տառն էլ ուղղվում է ազնիվ, անբասիր մարդկանց դեմ: Մարդն օտարվում է իր իսկ բնօրրանում, վերածվում մեխանիկական քաղաքացու, կորցնում մարդկային արժանապատվությունը. մարդուն առաջնորդում է **իր-ը**, **իրապաշտությունը**՝ զրկելով ուրույն մտածողությունից, նախաձեռնությունից, անհատականությունից: Դեռևս քսանական թվականների վերջում Չարենցն ամենայն անողոքությամբ դատապարտում էր իր իսկ երբեմնի իրապաշտությունը.

*Երեխայական մի խանդաղատանքով*
*Ես ի՛րն ընտրեցի իբրև հարսնացու—*
*Եվ երգս դարձավ անուժ ու անթով,*
*Եվ մոլորվեցի իրերի բանտում,*
*Եվ գլխիս իջավ մառախուղը ցուրտ:*

Իրապաշտության, սոցիալ-բարոյական տարատեսակ չարիքների դեմ մարտնչող Ռոստոմ-անհատը չեզոքացվում է, ոչնչացվում, մինչդեռ այսօր **անհատի** պատասխանատվությունը դարձել է այն հենակետը, որի վրա այժմ կենտրոնացված են սովետական արվեստի բարոյական-փիլիսոփայական և գեղագիտական որոնումները:

Մաթևոսյանի ստեղծագործության մեջ **տոհմի-ազգի** գոյատևման պրոբլեմը պրոբլեմների պրոբլեմն է, գեղագիտական-փիլիսոփայական վսեմ հավատամքը. ազգային հոգևոր արժեքների ժառանգորդում **(Չեզոք գոտի)**, ճակատամարտ հանուն սերնդափոխության **(Գոմեշը)**, արարչագործ աշխատանքը՝ որպես գոյատևման, նաև բարոյական հավերժական գործոնների՝ ազնվության, գեղեցկության, բարության, խաղաղասիրության հաղթանակի խորհրդանիշ **(Ծառերը)**: Մաթևոսյան արվեստագետի ողջ ջանքերն ուղղված են, ահա, անսեր, անտոհմ, անհայրենիք, բարոյազուրկ, անապագա մարդկանց դեմ:

**Չեզոք գոտու** հերոսը՝ ճարտարապետ Արծաթաքանյանը, կլանված է Անի հրաշակերտ տաճարի չափումներով՝ ողջ կյանքը վերածելով անօրինակ սխրանքի: Եվրոպականացած երիտասարդ ճարտարապետ Բահաթրյանին, սակայն, այդ ամենը թվում է անհեթեթություն:

Արծաթաքանյանը փորձում է հիմնավորել իր նահատակության, իր անձայր ոգորումների գաղտնիքը՝ ի հակադրություն Բահաթրյանի օտարամոլության, իրապաշտության ու տեխնիցիզմի, կուշտ և օսլայած կյանքի:

Գրողի և իրականության, իդեալի ու իրողության բախումը դրամատիկական սուր բնույթ է ստանում **Գոմեշը** (1968) վիպակում, երբ մարդու գործողությունները ուղղված են կյանքի իսկ հիմքերի— մայրացման դեմ, սերնդափոխության, ինքնահաստատման դեմ:

Վիպակի հիմքում դրված է ժողովրդական կենսափիլիսոփայությունը— հավատարիմ մնալ սիրո— մայրացման հզոր կանչ-բնազդներին: Սիրո ժողովրդական, ավանդական-հումանիստական կենսափիլիսոփայությունն է վերարծարծվում այստեղ: Գոմեշն անցնում է գյուղից գյուղ, գնում ինքնահաստատման, ճակատամարտ տալիս սոված գայլի, գազազած շների հետ, հանդիպում նախրապանների ու մաճկալների, երկրաբանների ու զբոսաշրջիկների, հասնում մինչև մայրաքաղաք, սպանդանոց, առնելով արյան հոտը՝ փախչում է: Բնության կանչին հնազանդ՝ միայնակ գոմեշն անցնում է անծանոթ վայրերով, հանդիպում անծանոթ երևույթների և մոլորվում մարդու անսովոր ու վտանգավոր արարքների ոլորտում: Հայ ժողովուրդը, որ կարող էր,— ասում է հեղինակը,— հյուրասիրության սփռոց բանալ ամբողջ աշխարհի համար, ահա, իր անխոհեմ գործողությամբ պատժում է գոմեշին, գոմշացուլի գոյությունը դնում հարցականի տակ:

Գրողն իր ձայնն է բարձրացնում այդ անբնական իրողության դեմ, ինքնահաստատման բնական ձայնը խեղդող մարդու անխոհեմ, անհեռատես գործողությունների դեմ: Մաթևոսյանը մարտնչում է հանուն մարդու, հանուն գոյի բնական կեցության: Այս ամենն այսօր դառնում է խորիմաստ, հնչում որպես մարդու մարդկայնացման, մարդու՝ որպես բնության սքանչելիք և



բնության հավիտենական պահպանության ու ներդաշնակության հիմն:

**Ծառերը** վիպակի հերոսուհին՝ Մայր Աղունը, ապրում է գրող-որդու հանդեպ դրսևորած մայրական արժանապատվության ո՛չ միայն խանդաղատանքով, այլև ենթադրվող «կործանումի» հոգեցունց տագնապներով: Մորը թվում է, թե որդու մարդկային՝ բարու, գեղեցկի, խաղաղության, հայրենասիրության վսեմ զգացմունքները— «խիղճը», նաև «խեղճությունը» նրան անվրեպ կմղեն դեպի կորուստ: «Լա՜վը չես, խեղճ ես, լա՜վը չես, զավա՜կս, որդիս, առաջնեկս, իմ հույսս, իմ թանկս, լա՜վը չես, մեջդ վրեժ չկա... Ինչ իմացողի հարցնում եմ՝ գովում ու ծիծաղում է— իբր թե լավն ես, խղճով ես, և էդ ծիծաղն իմ սրտին դանակ է դառնում, զավա՜կս, զավա՜կս... Քեզ կուլ են տվել ու գովում են, զավա՜կս, քեզ կուլ են տալիս...»:

Մայրն այնուհետև որդուն ներկայացնում է կյանքում իշխող երկու հակադիր կերպարներ. չարը խորհրդանշող՝ մայրական, բարին խորհրդանշող՝ հայրական տոհմի կերպարները:

«Քո պապ ու իմ հեր Իշխանը,— ասում է մայրը,— արնագույն պուճուր մի ձի ուներ, էնքան պուճուր, որ բանակ չէին տարել... չարությունից պայթում էր՝ որ մի ձի իրենից առաջ էր ընկնում: Հևում էր, թոքերը շխկշխկում էին, քթերից կրակ էր թռչում— իր պուճուր տեղով տրաքում էր չարությունից: Քո պապի պահած շունն էլ պիտի էդպես լիներ, նրա զավակն էլ ու չափարի բանջարն էլ ու պատի օձն էլ պիտի էդպես լինեին»:

Եվ ապա. «Լավությունն» բոլորին քո պապ ու իմ պատրոն Ավետիքն է արել: Ուրիշի համար՝ մեղու, պատվաստ, կացնի կոթ, ուրիշի համար՝ սել, ամուսնացած եղբոր փոխարեն՝ բանակ, եղբոր բանտարկված տղայի համար՝ կառավարչի մոտ կոնի— նա ասածս լավությունն էր էս ամբողջ գյուղին... խիղճ, խղճի վրա խիղճ, խղճի վրա խիղճ, ներսից խիղճ, դրսից խիղճ...»:

Որդու բախտով տագնապած մայրը թեև մի պահ տատանվում է, նախընտրում իր հոր՝ Իշխանի գործուն, անհանգիստ, վրիժառու, ավազակ հոգու ժառանգումը, սակայն մի պահ: Իր մեջ խտացնելով ժողովրդի իմաստությունը, հեռատեսությունը, կենսափիլիսոփայությունը, մայրը՝ մի ներքին հզոր մղումով, տառապանքով ու զարմանքով հայտնագործում է կենսական մի մեծ ճշմարտություն: «Քո պապ Ավետիքի քնա՜ծ, դանդա՜ղ, բարի՜, էն էլ, ես ինչ իմանամ, բարի՞ թե վախկոտ, չեղած մի պուտ արյունը էդ ո՞նց կարողացավ կըտրել մերանի պես քո մեջ Իշխանի տված էն կատաղի վարար արյունը, անդադար, խաբեբա, շողոմքոր, համարձակ, անքուն, վրիժառու, զնգուն-զվարթ-ավազակ առնատի արյունը քո մեջ էդ ո՜նց կտրվեց Ավետիքի քնած մի պուտ արյունից»:

Այդպիսի եզրահանգումը հենց Մաթևոսյան արվեստագետի կենսափիլիսոփայության մեծ իդեալն է, պայծառ լավատեսության բացահայտումը: Նա ունի այն ներքին համոզումը, որ մեր կյանքի թերությունները կրում են լոկ ժամանակավոր բնույթ, հատուկ չեն մեր հասարակությանը: Իրականության մեջ առերևույթ հզոր չարիքը, չարագործը, ի վերջո, մատնվելու է պարտության, ի վերջո հաղթանակելու են սիրո, բարու, ազնվության, գեղեցկի, խաղաղության ավանդական, առերևույթ թույլ, բայց իրապես կենսունակ հզոր ուժերը, հաղթանակելու է ուրեմն, ժողովրդի՝ հազարամյակներ փայփայած **հումանիստական-խաղաղասիրական** ամենակարող իդեալը՝ որպես մարդկային արդար կեցության ու գոյության պահպանման հավերժական գործոն:

Թվում է, թե գրողի մասին ամեն ինչ կամ շատ բան է ասված: Այդ թվում է միայն: **Մաթևոսյանական** արվեստի շատ գաղտնարաններ տակավին մնում են բաց տարածություն— կարիք ունեն լուրջ, խորազնին լուսաբանության, ասենք, լեզվամտածողության, կենսափիլիսոփայության ժողովրդական ակունքների, գիտակցության ու ենթագիտակցության փոխհարաբերության հարցերի զննումը՝ իր իսկ Մաթևոսյանի գեղագիտական-փիլիսոփայական հայացքների կամ հայ սովետական 60—80-ական թվականների արձակի համակարգում: Ժամանակն է խիզախել թափանցելու մաթևոսյանական արվեստի գաղտնարանները, արվեստ, որ լեցուն է ներքին պոռթկումներով, հրայրքներով ու շողարձակումներով, լեցուն **բալզակյան շնչով ու խորությամբ, դոնկիխոտյան ազնվությամբ ու վճռականությամբ, փոքրմհերյան վճռականությամբ ու կենսափիլիսոփայությամբ:**

**ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ**

## ՁԱՅՆ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ

ՖԱՇԻԶՄԻ ԴԵՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ժողովրդի տարած պատմական հաղթանակի օրը, այս անգամ արդեն 40-երորդը, մեր հերոս, ստեղծագործ ու խաղաղասեր ժողովուրդը առաջադեմ մարդկության հետ միասին նշեց արժանի շուքով ու հանդիսավորությամբ: Համաժողովրդական տոն էր սովետական երկրում. չէ՛ որ բացվել էր 40-րդ խաղաղ գարունը՝ անցած ամենաեղեռնական, ամենաահավոր պատերազմից հետո:

«Մեր հաղթանակը անցյալ չի դարձել,— մայիսի 9-ի տոնակատարության օրն ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:— Դա ներկային և ապագային միտված կենդանի հաղթանակ է»:

Հեշտությամբ ձեռք չբերվեց համաշխարհային-պատմական այդ հաղթանակը: 20 միլիոն զոհ, ավերակույտերի վերածված 1.700 քաղաք, ավան և 70 հազար գյուղ, 25 միլիոն անօթևան մարդ... Այսքանը՝ միայն սովետական կողմից: Ստրկացվել ու ավերակվել էին նաև Եվրոպայի շատ երկրներ: Մահվան ճամբարներում ամեն օր երկնքի կապույտն էր աղարտում մարդկային ոսկորներից ելնող ծուխը: Վըտանգի տակ էր մարդկության ճակատագիրը: Վտանգի տակ էր դարերի արդյունք համաշխարհային քաղաքակրթությունը:

Սովետական ժողովուրդը իր միլիոնավոր զավակների արյան ու հերոսության գնով փրկեց աշխարհն ու մարդկային քաղաքակրթությունը դարչնագույն ժանտախտից:

Զինվորի շինելով ու բանվորի արտահագուստով սովետական ժողովուրդը, հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հաղթեց և հպարտ կանգնեց հաղթանակի ու խաղաղության պատվանդանին, որից և խաղաղության սերմեր է սփռում համայն աշխարհում:

Ֆաշիզմի դեմ տարած հաղթանակը բեկումնային էր փրկված մարդկության համար: Այն սոցիալական առաջընթացի նոր ուղիներ բացեց ժողովուրդների համար, մոլորակի խաղաղությունն ապահովելու համար:

Եվ այսօր, ահա, մոռանալով անցյալը, քաղաքական խոր կարծրախտով տառապող որոշ ուժեր տքնում են կրկնել պատմությունը, հրել աշխարհը դեպի անդունդ, այս անգամ՝ միջուկային... Աշխարհին ըսպառնում է կործանման վտանգը: Ոչ մի քաղաքական ու պետական գործիչ այսօր անտարբեր չպետք է լինի մարդկության ճակատագրի հանդեպ: Չէ՛ որ այդ ժամանակի շատ գործիչների անտարբերությունն էր, որ ֆաշիստական արկածախնդիրներին հրեց դեպի երկրորդ համաշխարհային հրդեհը:

Անցյալ աշխարհամարտում սովետական ժողովրդի հերոսական տարեգրության ըստեղծողները դարձան ռուս ականավոր բանաստեղծներ Ա. Տվարդովսկին, Ն. Տիխոնովը, Կ. Սիմոնովը, Ա. Սուրկովը, ուկրաինացի Պ. Տիչինան, Մ. Բաժանը, Մ. Ռիլսկին, Պ. Վորոնկոն, բելոռուս Յա. Կոլասը, Ա. Կուլեշովը, ադրբեջանցի Ս. Վուրղունը, Ս. Ռուստամը, Մ. Ռահիմը, վրացի Գ. Լեոնիձեն, Ի. Նոնեշվիլին, Ռ. Մարգիանին և շատ այլ ազգերի նշանավոր բանաստեղծները:

Այսօր քաղաքական-գաղափարական անհաշտ պայքարի առաջավոր գծում դարձյալ ռուս ժամանակակից պոեզիայի դրոշակակիրներն են. Ե. Իսաևը՝ լենինյան մրցանակի արժանացած հակապատերազմական հռչակավոր պոեմներով, Ռ. Ռոժդեստվենսկին՝ մայակովսկիական շնչի երկերով, Եվգ. Եվտուշենկոն՝ ռուս ժողովրդի լայնահուն-խաղաղ ոգու ներշնչանքներով, Ա. Վոզնեսենսկին՝ խոհափիլիսոփայական քնարի փայլատակումներով:

Նրանց հետ են սովետական բոլոր բանաստեղծները: Այսօր պատերազմի դեմ և հանուն խաղաղության իրենց ձայնն են բարձրացնում և հայ բանաստեղծները՝ Հ. Սահյանն ու Վ. Դավթյանը, Ս. Կապուտիկյանն ու Հր. Հովհաննիսյանը, Մ. Մարգարյանն ու Ա. Սահակյանը և ուրիշներ: Նրանց հակապատերազմական ստեղծագործությունները կարելի է միավորել խորհրդանշական մեկ ընդհանուր վերնագրի տակ՝ **Սուրը դափնու վրա.** հաղթանակել է սովետական ժողովուրդը, և խաղաղությո՛ւնն է նրա երազանքը: Զուր չէ, որ **Խաղաղություն ամենեցուն** վերնագրեց իր վերջին էպոսաշունչ պոեմը Հովհ. Շիրազը: Այդ խորիմաստ պոեմն արտահայտում է համայն սովետական ժողովրդի, աշխարհի բոլոր խաղաղասեր մարդկանց նվիրական ձգտումը՝ տեսնել աշխարհը խաղաղության ջերմ, լուսաճաճանչ շողերով պարուրված:

Այս է ժամանակակից սովետական պոեզիայի հիմնական մոտիվը, երգ-երգոցը: Բայց մեզ հետ է այսօր ո՛չ միայն այսօրվա պոեզիան: Այն արժեքավորը, ինչ ըստեղծվել է անցած պատերազմի հրաշունչ օրերին, 40 տարի առաջ, մեզ հետ է՝ որպես անմոռաց հիշողություն, ոգեշնչող տարեգրություն, որպես զգուշացում:

Թո՛ղ չլինի այլևս ոչ մի պատերազմ, ո՛չ մի սև ամպ թող չմթագնի աշխարհի երկնակամարը, և բանաստեղծներն այլևս թող չռազմերգեն, այլ հնչեցնեն խաղաղ կյանքի, սիրո, բերկրանքի, ժողովուրդների բարեկամության իրենց հայրենախոս քնարը:

Այսօր էլ մեծ Հայրենականի տարիների հայ սովետական պոեզիան զորավիգ է և ահազանգ մեր տագնապալի մոլորակի տարբեր միջօրեականներում ալեկոծվող իրադարձություններին:

**«Երբ որոտում են հրանոթները,** մուսաները լռում են»... Մարդկության ամենաոխերիմ թշնամու՝ գերմանական ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական մեծ պատերազմը հերքեց ճշմարիտ թվացող հինավուրց այս խոսքը:

Արևմուտքից մեր երկրի վրա հորդացող հեղեղի դեմ կանգնեց սովետական զինվորը և զինվորի կողքին՝ սովետական բանաստեղծը: Մեկը կռվում էր զենքով, մյուսը՝ զենքի պես հատու իր երգով, իսկ շա՛տ-շատերը՝ և՛ զենքով, և՛ գրչով:

Ռազմաճակատ մեկնեցին գրեթե բոլոր հայ բանաստեղծները, իսկ ովքեր մնացին թիկունքում, ծերունազարդ վարպետ Ավետիք Իսահակյանի գլխավորությամբ, ապրում էին զինվորի պես և զինվորի պես մարտնչում գեղարվեստական խոսքով:

Մշտապես կապված լինելով իր ժողովրդին, հայրենիքի ճակատագրին ու ժամանակին՝ մեծ Վարպետը պատերազմի առաջին իսկ օրերից իր աքանչելի բանաստեղծություններով և հրապարակախոսական կրքոտ խոսքով անարգանքի սյունին էր գամում ֆաշիզմը, ոգեշնչում հայ մարտիկներին՝ հերոսաբար մարտնչելու սովետական բազմազգ երկրի ազատության համար, համայն մարդկության փրկության համար: Նրա ռազմահայրենասիրական բանաստեղծությունները սովետական պոեզիայի նվաճումներից են:

Եկավ երկար սպասված երանելի պահը, Վարպետը սովետական ժողովրդի մեծ հաղթանակի առթիվ գրեց իր հոյակապ գործերից մեկը՝ **Մեծ հաղթանակի օրը**, որն այժմ էլ հուզում է ընթերցողին.

*Մեր սուրը փառքով դրեցինք պատյան.—*
*Մեծ հաղթանակի օրն է ցնծալից.*
*Պարտվեց մահաշունչ ոսոխը դաժան,*
*Երգեր են հորդում զվարթ սրտերից...*

Շատերն ընկան հաղթանակի ճանապարհին, և այդ շատերի մեջ, թերևս, ամենաերիտասարդներից մեկը բանաստեղծ Դերենիկ Չարխչյանն էր, որ վարակիչ ձայնով ու հավատով ասում էր.

*Գնում եմ կռիվ, կռիվն է վերջին,*
*Գնում եմ՝ երկրիս իմ պարտքը տալու,*
*Հերոսի փառքով հուր կռվի միջին՝*
*Հերոսների հետ անմահանալու:*

Երիտասարդ բանաստեղծն այրվեց ստալինգրադյան հրդեհների բոցերում, որպես հերոս անմահացավ ու հավերժ մնաց սիրելի կնոջն ուղղած քնարական ջերմաշունչ այս տողերում.

*Թե մարտում ընկնեմ, տխուր մի՛ մնա,*
*Անսեր մի՛ մնա, սիրի՛ր դու մեկին.*
*Թող ջահել սիրտդ մեկով արբենա,*
*Ափսոս է վարդը թոշնի գարունքին...*

Տարբեր էին Մեծ հայրենականի ռազմաճակատներում մարտնչող հայ բանաստեղծների ստեղծագործական խառնվածքն ու ձայնը՝ Մեսրոպ Մերուժանից մինչև Նաիրի Զարյան, բայց նրանց բոլորին միավորում էր հայրենիքի սերը, հայրենիք, որը վտանգի մեջ էր:

Հիրավի, առասպելի է նման կյանքն այն սերնդի, որի սրտի միջով անցավ պատերազմը, և որն անվախ անցավ պատերազմի բոցերի միջով, տեսնելով հրդեհ ու մահ, կործանված քաղաքներ ու փլված երկնակամարներ և փրկեց հողագնդի բախտը:

Այս սերնդի խոշոր բանաստեղծներից է Վահագն Դավթյանը, որ ռազմի դաշտ ի-

ջավ այնպե՞ս ջահել, դեռ չիմացած, թե ո՞վ պետք է լինի առաջին իր սերը: Քայլեց նա ընդդեմ մրրիկների, տեսավ արյուն, ավեր, տառապանք, հարյուր անգամ մահը եկավ նրա դեմ և այդ ժամանակ առաջին անգամ խորապես սիրեց կյանքը, սիրեց մեծ սիրով:

Եվ հիմա հիշում է բանաստեղծն իր ընկած ընկերոջը՝ խարտիշահեր, ջահել ռուս զինվորին, որը թեև զոհվեց, բայց մոտեցրեց հաղթանակի օրը:

...Գարուն է բաց դաշտում: Գլուխը հայրենի հողին դրած, արնոտ գնդակը՝ սրտում, ճակատին՝ պաղ քրտինք, կոպերին մանկորեն խաղաղ մի նինջ, ասես քնած է զինվորը.

*Ինձ թվում է, թե նա չի մեռել,*
*Թե պառկած է նա ծաղկունքի մեջ սուրբ*
*Ու իր ականջը մայր հողին դրել՝*
*Մեր հաղթանակի քայլերն է լսում...*

Ընթերցողը վաղուց սիրել է Վահագն Դավթյանի հայրենասիրական բանաստեղծությունները և, հատկապես, **Ճանապարհ սրտի միջով** տաղանդավոր պոեմը, որ նվիրված է Սովետական Միության հերոս Հունան Ավետիսյանին: Սովետական զինվորի մոնումենտալ կերպարն է քանդակված նաև նրա **Զինվորը վերջին բարձունքի վրա** բանաստեղծության մեջ, բարձունք, որը, թվում է, թե պատվանդան է դարձել մարտիկի համար:

Այս սերնդից է նաև մեր մյուս նշանավոր բանաստեղծը՝ Հրաչյա Հովհաննիսյանը: Նրա պոեզիան ևս աճեց ու առնականացավ ռազմի բոցերում, տոգորվեց խոր հավատով սովետական ժողովրդի վերջնական հաղթանակի հանդեպ:

*Կգա ժամը, կընկնի մեր ոսոխը վերջին,*
*Խաղաղության փողը կհնչի աշխարհում...*

Հրաչյա Հովհաննիսյանի երիտասարդ հերոսը պայքարում էր սովետական յուրաքանչյուր թիզ հողի համար, գիտակցելով, որ ռուսական տափաստանը կամ Սև ծովը պաշտպանելով՝ հարազատ Հայաստանն է պաշտպանում: Ահա ինչ է ասում նրա հերոս հայ նավաստին.

*— Ծով չկա մեզ մոտ,— մրմնջում էր նա,—*
*Ծով չկա հեռու մեր Հայաստանում,*
*Բայց ես Սև ծովի ջրերի վրա*
*Հայրենի լեռ ու հողն եմ պաշտպանում:*

**Սուրը դափնու վրա** խորիմաստ խորագրի տակ ամփոփված են բանաստեղծի ռազմական երգերը: Հովհաննիսյանի ռազմաճակատային քնարի մնայուն նմուշներից են հատկապես **Վարդավաճառ** և **Սաղավարտ** բանաստեղծությունները՝ սովետական մարդու երազանքների, կարոտի, բարոյական բարձր նկարագրի, մահվան ու կյանքի փիլիսոփայական իմաստավորման լավագույն արտահայտությունները:

Թաթուլ Հուրյան. սիրելի, հարազատ անուն: Մեզ հետ ապրող, մեզ հետ շնչող, մեզ հետ քայլող բանաստեղծ-քաղաքացի: Տաղանդավոր բանաստեղծն ապրեց ստեղծագործական խիզախումներով լի մի կյանք, որը կարճատև եղավ, բայց եղավ կայծակի լույսով բռնկված գեղեցիկ մի պահ՝ պոեզիայի հավերժական երկնակամարում: Նա ներշնչված երգեց կյանքը, հայրենիքը, սերը, խիզախումը և հաստատուն բարձրանում էր պոեզիայի ոսկե սանդուղքներով վեր, երբ «խտացան ամպերը պատերազմի ու մահի...»: Մարտիկ էր գրականության մեջ, որպես մարտիկ էլ մեկնեց ռազմի դաշտ:

Գեղեցիկ մահը թանկ է ապրելուց...,— ասաց և գնաց դեպ անմահություն: Իր բանաստեղծություններից մեկում Հուրյանը գրել է.

*Իմ աստղը նա՛ է, նա՛,*
*Վառվող սուտակի,*
*Որ շողում է Կրեմլյան*
*Մեծ աշտարակից:*

Միլիոնների այդ աստղը մարելու եկած ֆաշիստական հորդաների դեմ կռվեց գանգրագիսակ բանաստեղծը Սևաստոպոլի մոտ, Մեկենզևյան լեռներում՝ ձեռքին նռնակներ, սրտի մեջ՝ կրակ:

1942 թվականի ծանր օրերին նա հերոսաբար զոհվեց Սևաստոպոլի մատույցներում: Մահվանից առաջ հասցրեց սերունդներին թողնել.

*Այս սրբազան ժամին հոգ չէ մահը այնքան,*
*Թո՛ղ գալիքի երգը մեզ հուշարձան լինի,*
*Եվ սերունդներն ասեն՝ հերոսաբար ընկան*
*Հանուն հայրենիքի...*

Եվ գալիքի երգը, սերունդների երգը մարտիկ-բանաստեղծի համար լավագույն հուշարձան դարձավ: Նրան շնորհվեցին կոմերիտմիության հանրապետական ու միութենական մրցանակներ:

Պատերազմի օրերին հնչեց այն ժամանակ տակավին անհայտ, այժմ խոշոր բանաստեղծ Համո Սահյանի քնարաշունչ ձայնը: Նրա բանաստեղծությունների փոքրիկ ժողովածուն, ուր հայրենի բնաշխարհն էր ծվարել, Գյազբել սարն ու Որոտանը, ուր նազում էր Նաիրյան դալար բարդին՝ որպես խորհրդանիշն այդ աշխարհի, որի



պաշտպանության համար ոտքի էր ելել բանաստեղծը, միանգամից ճանապարհ հարթեց դեպի ընթերցողի սիրտը: Սահյանական Նաիրյան դալար բարդին մինչև օրս էլ նազում է մեր պոեզիայի անդաստանում:

*Ես երգիչ հրի, սրի, շա՜տ չունեմ քո սիրուց զատ,*
*Քեզ նման կանաչ կյանքով քեզ համար ելած մարտի,*
*Կմեռնեմ, միայն թե դու դարերում ազատ խշշաս,*
*Իմ հեռո՜ւ, հեռո՜ւ, հեռո՜ւ Նաիրյան դալար բարդի:*

Իր կանաչ կյանքով բանաստեղծը պաշտպանեց հայրենի երկիրը, որ ո՛չ ոք այլևս չհանդգնի վայրի մոլուցքով արշավել այս բարդու վրա, ավերի ու ցավերի, ավարի ու խավարի երկիր դարձնել Հայաստան աշխարհը, պաշտպանեց, որ այսօր իր փառապանծ եղբայրների հետ արև տանի աշխարհներին՝ «արևին թիկնած, արևից շիկնած, արևի՛ երկիր Հայաստանս...»:

Մեծ հայրենականի բոցերի մեջ թրծվեց և ավելի հզորացավ մեր երկրի բոլոր ժողովուրդների բարեկամությունը: Քանի՛-քանի հայ քաջորդիներ հերոսի մահով ընկան ուկրաինական խանձված տափաստանների պաշտպանության համար, Թամանում և Պոլեսիեում, Վոլգայի ափերին ու Մոսկվայի մատույցներում, լենինգրադյան օղակում կամ Ռիգայի տակ: Նրանք ընկան սովետական երկրի համար, որը բոլորիս մեծ ու անխորտակ տունն է, մեծ ընտանիքի հարազատ տունը: Ընկան՝ իրենց արյան սուրբ ցողով հավերժ զոդելով ժողովուրդների սրտերը:

Այդ սրբազան բարեկամությունն է երգել Հայաստան երկրի դուստր ու բանաստեղծ Սիլվա Կապուտիկյանը, որ, հասնելով Մեծ Ռուսիայի հպարտ շիրմին, նրան է բերում իր ժողովրդի եղբայրության խոսքը.

*Բայց ի՞նչ ասեմ արդյոք, ես ի՞նչ խորհեմ կրկին,*
*Որ առավել լինի խոսուն ու զորավոր,*
*Քան այն, որ հանգչում է քո Ռայնիսի կողքին*
*Ռիգայի մոտ ընկած մի հայ զինվոր...*

Այսպիսի հրաշալի բանաստեղծություններ շատ ունի Սիլվա Կապուտիկյանը, քնարական բյուրեղացումներ, որոնց մեջ ցոլցլում են հայ ժողովրդի արիական ու արդարադատ ոգին, վեհ հումանիզմը, եղբայրության անկաշառ զգացումը:

Սովետահայ պոեզիայի՝ Մեծ հայրենականին նվիրված էջերը չի կարելի պատկերացնել առանց Գուրգեն Բորյանի մարտաշունչ, անկեղծ ստեղծագործությունների: Պատերազմի առաջին իսկ օրերից հայրենանվեր բանաստեղծը գործող բանակում էր և իր ջերմաշունչ ստեղծագործություններով հարստացրեց սովետահայ հայրենասիրական քնարը:

ՍՍՀՄ պետական մրցանակի կրկնակի դափնեկիր Գևորգ Էմինը յուրովի էր ընկալում ու վերարտադրում այդ հրաշեկ օրերը: Կյանքի առօրյա երևույթների մեջ նա տեսնում է դրամատիկական լարվածություն, հերոսականություն և երգում է այդ հերոսականությունը: Ահա **Բալլադ չմուծված անդամավճարի մասին** բանաստեղծությունը. ժողով է դադարի ժամին, և գնդի ջահել կոմիսարը հավաքում է կուսակցական անդամավճարը: Հանկարծ դղրդում են դիրք ու խրամատ, և ժողովն ընդհատվում է: Գրոհ: Ընկնում է ջահել կոմիսարը... ու երբ մարտն ավարտվում է,

*...Ծերուկ գնդապետն, իր գունդը հավաքած,*
*Անցնում է ընդհատված ժողովին.*
*— Երկու նոր դիմում կա,— նա խուպոտ կարդում է,—*
*Երկուսն էլ զոհվածի անունից.*
*«Հարձակման ենք գնում, թե զոհվենք մարտում այս,*
*Խնդրում ենք համարել կոմունիստ...»:*
*— Քվեարկե՞լ...*
*— Հարկ չկա:*
*Հաստատե՛լ:*
*— Անցնո՜ւմ ենք:*

Նշանավոր քնարերգու Գեղամ Սարյանի քնարը, որի նուրբ լարերը անտարբեր չէին կարող մնալ սովետական մարդու և մարտիկի հոգու մեծ կորովի, զգացմունքների քնքշության ու հերոսականության առջև, անմիջապես արձագանքեց մեր ժողովրդի աշխարհամարտին. **Հրաժեշտ, Սոնա, Լուսանկարը, Հետախույզը, Բարդիների պուրակում, Երեք կոմբայնավար** և հուզաթաթավ այլ գործեր Հայրենական պատերազմում մարտնչող ու թիկունքում անձնուրացորեն աշխատող սովետական մարդկանց հոգու գեղեցիկ պատկերը, խիզախումները հավերժացնող տարեգրություններ են, մեր պոեզիայի ինքնատիպ էջերից: Սովետական ժողովուրդն է սիմվոլացած **Երեք կոմբայնավար** սքանչելի գործում.

*...Հայրենիքի մարտերն այնտեղ թնդում էին,*
*Այստեղ ծփում էին արտերը հողմահար,*
*Այնտեղ կռվում էին, այստեղ հնձում էին՝*
*Ամեն մեկը դարձած երեք կոմբայնավար:*

Երբ հայրենիքի գլխին կախվեց ահեղ վտանգը, ժողովրդական պատգամախոս, մեծ բանաստեղծ Հովհաննես Շիրազը կանխագուշակեց թշնամու անկումը.

*...Նա մեռնի՛ պիտի*
*Եվ հավերժ մնա մահվան ոտքի տակ...*

Բանաստեղծն անմիջականորեն չմասնակցեց պատերազմին, չեղավ նրա ոչ մի ռազմաճակատում, բայց նրա անմահ **Էքսպրոմտ** վեց տողանոց պոեմը շուրթից շուրթ անցավ բոլոր հայ մարտիկների հետ՝ ռազմաճակատի առաջավոր գծից մինչև Բեռլին: Խաղաղասեր ժողովրդի հավերժության թեման այստեղ արտացոլված է ընդհանրացման մեծ ուժով:

*Մենք խաղաղ էինք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես խուժեցիք վայրագ.*
*Մենք ձեր դեմ ելանք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես ռռնացիք վայրագ.*
*Բայց մենք հավե՜րժ ենք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես կկորչե՛ք վայրագ.*

Ավելի սեղմ և դիպուկ անհնար է բացահայտել պատմության մեծագույն հերոսի՝ պատմությունը կերտող ժողովրդի, հավերժության թեման:

Ժողովրդի բանաստեղծը միշտ ժողովրդի հետ է, հայրենիքի հետ: Մեծ և անկեղծ է նրա սերը.

*Չեմ ուզում գոռալ իմ սիրո մասին,*
*Սակայն իմացի՛ր, հայրենի՛ք իմ մեծ,*
*Քեզ հարյո՛ւր տեղով խոցեց թշնամին,*
*Բայց հազա՜ր տեղով իմ սիրտը խոցվեց...*

Այս ազնիվ անկեղծությունը, որդիական անսահման նվիրվածությունը, որ հատուկ են Շիրազի պոեզիային, մի անգամ ևս գալիս են ապացուցելու, որ իսկական, վըսեմ պոեզիան հավերժական է, ինչպես ժողովուրդը, ինչպես հայրենի վեհանիստ լեռները:

Պատերազմի ծանր օրերին, երբ ֆաշիստական պրոպագանդան տարփողում էր իր հաղթանակը, «կանխագուշակում» սովետական ժողովրդի պարտությունը, Հովհաննես Շիրազը գրեց իր հանճարեղ **Բիբլիական** պոեմը, որը տիեզերքը նվաճող սովետական մարդու հոյակապ ներբողն է, սովետական ժողովրդի հզորության հավաստագրված հիմնը:

Մեծատաղանդ Պարույր Սևակը յուրովի արձագանքեց իր ժողովրդի գոյամարտին. **Անմահները հրամայում են** գրքում ընկած հերոսների անունից նա գրեց այն երգը, որ ծնվել էր խոնավ խրամատում, անհագնացել սովետական զինվորի՝ Եվրոպան չափած ոտնաձայնից: Հեղինակը բարձրացրել է ժողովրդի հերոսական ոգու, ընկածների հիշատակի հավերժության թեման: Բանաստեղծը երակներով, էությամբ, արյամբ էր զգում դարի շունչը, երգում աշխարհի բախտը փրկած մարտերում ընկածներին: Պահպանել այդ փրկված բախտը. «Երգի՛ր, բայց կռվելը... չմոռանաս, ընկե՛ր». այս է ընկած անմահների սուրբ պատվիրանը:

**Մերոնք, Հարազատներ, Լեգենդը, Որդին, Հրդեհների լեզուն** սևակյան բանաստեղծությունների բովանդակությունը հաղթանակի բուռն բերկրանքն է, սովետական մարդու վեհ նկարագիրը:

Ռազմի տարիներին ամբողջ ուժով հընչեց նաև Ազատ Վշտունու, Սողոմոն Տարոնցու, Աշոտ Գրաշու և շատ ուրիշների քնարը: Նրանք ստեղծեցին ջերմաշունչ բազում երգեր, որոնք այսօր էլ չեն կորցրել իրենց արժեքը:

Բայց Մեծ հայրենականը, սովետական ժողովրդի աննկուն ոգին, ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության վիթխարի ուժը, ֆաշիզմի պատմական դատապարտվածությունը սովետահայ բանաստեղծներից ոչ ոք այնքան խոր, այնքան վարակիչ պաթոսով չի արտահայտել, ինչպես Նաիրի Զարյանը: Այս իմաստով նա, թերևս, բացառիկ դեմքերից է սովետական ամբողջ գրականության մեջ:

Նաիրի Զարյանը բառացիորեն ապրում էր սրբազան պատերազմի ելած իր ժողովրդի կենաց ու մահու պայքարի օրերին, և նրա փոթորկուն զգացմունքների գեղեցիկ այրումը մեր գրականությանը պարգեվեց հայրենասիրական-քաղաքացիական պոեզիայի փայլուն մի գոհարաշար, որն ընդմիշտ կկազմի նրա ամենավառ էջերից մեկը: Գտնվելով գործող բանակում՝ բանաստեղծը մոտիկից շփվեց սովետական ռազմիկի հետ, համատեղ վերապրեց անհաջողությունների դառնությունն ու հաղթանակի բերկրանքը: Քայլեց ավերված քաղաքներով ու գյուղերով, տեսավ մոխրացած հողը և վրեժի կոչ նետեց պայքարող մարդկությանը: Ցասկոտ էր նրա խոսքը, ահեղ ու դիպուկ, ինչպես հրետանային կրակը.

*Թռի՛ր իմ երգ, որպես արկի շառաչ,*
*Պատռի՛ր, անցի՛ր բերդերն անմատչելի*
*Եվ հայրենի հողից ավյուն առած՝*
*Շաչի՛ր անկումը, վերջը Հիտլերի...*

Նաիրի Զարյանի գրչին են պատկանում **Զայն հայրենական, Կարինե, Վաչե** պոեմները, **Ամենազազան, Վրեժ** դրամատիկական երկերը, **Նա պիտի կախվի, Միցկևիչ և Հիտլեր, Գերմանիա, Ուղերձ իմ ժողովրդին, Այց ռազմաճակատին, Նրա վերջին խոսքը, Գնդապետ Զաքիյանի հիշատակին, Ցասում, Հաղթանակի բերկրանքը, Լսե՛ք, դարե՛ր** և շատ այլ բանաստեղծություններ՝ բոլորն էլ տոգորված հզոր ու անկասելի լավատեսությամբ, ժողովրդի հաղթանակի խոր գիտակցությամբ:

Պատերազմի թեժ օրերին ռազմաճակատի մի ծայրից մյուսն էր թռչում զարյանական ուղերձը հայ ժողովրդի զավակներին.

*Իմ հա՛յ ժողովուրդ, եղբայրնե՜ր, քույրե՜ր հայրենապաշտ,*
*Որտեղ էլ որ կաս այս հողմագալար երկրի երեսին,*
*Ո՛ր կխազնդում, ո՛ր ծովի ափին, ո՛ր երկնքի տակ,—*
*Լսի՛ր քո որդուն, քո բանաստեղծին.*
*— Զա՛րկ այս հրեշին...*
*Զա՛րկ և հավատա՛, որ մթնում հյուծվող աշխարհի վրա*
*Ծագում է արդեն Կարմիր առավոտ.*

Հիշենք, որ այս բանաստեղծությունը գըրված է 1941 թվականին, երբ հիտլերյան հորդաները, հարբած իրենց ժամանակավոր հաղթանակներով, արշավում էին դեպի մեր հայրենիքի սիրտը՝ Մոսկվա:

Այդ օրերին ծնվեց **Մենք չենք տա Մոսկվան**՝ սովետական բանաստեղծի անհողդողդ խոսքը թշնամուն.

*...Մոսկվան մեր սիրտն է, նա չի՛ հանձնվի մեր չար ոսոխին—*
*Նա մեր գլուխն է և չի՛ խոնարհվի ոչ մի բռնության,*
*Նա մեր պատիվն է, մեր սրբությունը, մեր ուխտատեղին...*
*Մենք չե՛նք տա Մոսկվան.*

Ատելության ու ցասման խոսքեր նետելով ոսոխին՝ բանաստեղծը չէր նույնացնում գերմանական ժողովրդին և ֆաշիստներին:

*Գերմանիա, ո՞ւր ես գլորվում այդպես...*

Ցավով, դառնությամբ հարցնում էր բանաստեղծը և փրկության ելքը տեսնում միայն մարդկության, այդ թվում և գերմանական ժողովրդի թշնամու՝ դարչնագույն ֆաշիզմի, կործանման մեջ: Գերմանական ժողովրդի հոգևոր մեծ արժեքները պատկանում են համայն մարդկությանը, ժողովուրդ, որ աշխարհին տվել է Մարքս, Հեգել, Բեթհովեն, Գյոթե, Շիլլեր... Բայց, որպեսզի Բեթհովենը և Շիլլերը միշտ ապրեն, պետք է կործանվի ֆաշիզմի որջը. այս է բանաստեղծի եզրահանգումը:

Սովետահայ պոեզիայի համաժողովրդական ճանաչում ստացած գործերից մեկը **Զայն հայրենական** պոեմն է, ժողովրդի նամակը ռազմադաշտում մարտնչող իր զավակներին: Սա մի ցնցող գեղարվեստական փաստաթուղթ է ժողովրդական ոգու և մտքի հստակատեսության, հաղթանակի ու սխրանքների մղող մի գործ, որ հիմա էլ թունդ է հանում ընթերցողի սիրտը: **Զայն հայրենականը** ժողովրդի նվիրական պատգամն է, ուր ոգեկոչվում է Տիգրան Մեծը, որ «մի ձեռքով բռնեց եղջյուրն Արևելքի և մյուս ձեռքով՝ եղջյուրն Արևմուտքի», ոգեշնչվում են Մաշտոցը, որ սեփական հոգին հալեց՝ ձուլելով մեր տառերը, Խորենացին, որ մի ձեռքով բռնեց կերոնն Արևելքի և մյուս ձեռքով՝ կերոնն Արևմուտքի», Վարդանը սեգ, աստվածախանդ Նարեկացին, Սասնա Դավիթը... Աբովյանը, Նալբանդյանը, Թումանյանը, Շահումյանը, նոր Երևանը. սրանք ոգեշնչում են հայ ռազմիկին՝ պաշտպանելու իր անցյալը, ներկան և ապագան: Պոեմը կարդում էին ռազմաճակատում, արտագրում, տարածում: Ժողովրդի լավատեսությունը, փիլիսոփայությունն է հավերժացած պոեմից առնված այս տողերում.

*...Եվ կբացվի երկինքը մեզ և աշխարհին արար*
*Իբրև անմահ վերածնության մի ծեգ,*
*Ժողովուրդներն աստղերի պես կողջունեն իրար*
*Եվ մեզ կասեն.*
*— Դուք, որ կռվել եք մեծ եղբայրության համար,*
*Ապրե՛ք արևի տակ և հավիտյան պայծառացե՛ք...*

Մեծ հայրենականում հայ ժողովրդի լավագույն շատ զավակների հետ զոհվեցին և մարտիկ-բանաստեղծներ: Սովետական մյուս ժողովուրդների հետ մեկտեղ նրանք կռվեցին ու կոփեցին համաշխարհային պատմական մեծ հաղթանակը: Անմոռաց այդ օրերին ստեղծած նրանց գեղարվեստական խոսքը մեկ ընդհանուր անվամբ կարելի է կոչել **Զայն հայրենական:**

Այդ ձայն հայրենականը կհնչի մշտապես, կհնչի խրոխտ ու հպարտ՝ հերոսության ղողանջներ առաջացնելով մեր սրտերում, իսկ թշնամուն էլ մշտապես կզգուշացնի, որ

*...մենք հավերժ ենք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես կկորչե՛ք վայրագ...*

**Դ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ**

# ԱԹԵԻԶՄԻ ՏԱՐՐԵՐԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱԹԵԻԶՄԸ աշխատավոր զանգվածների սոցիալական հասունության վկայություններից է, նրա կենսափորձով ձևավորվող մատերիալիստական աշխարհայացքի արտահայտությունը: Այստեղ արծարծվել են կրոնի առաջացման հարցերը, քննադատվել եկեղեցու խաղացած դերը հասարակության մեջ, ծաղր ու ծանակի ենթարկվել կղերականների հոգու բարքերը:

Հանդիսանալով ժողովրդի տարերային մատերիալիստական աշխարհայացքի բաղադրամասը՝ այն բացասում է աստծուն, քննադատում կրոնական գաղափարախոսությունը, հոգևորականությանը և այդ ժխտման միջոցով հաստատում մարդու իրական լինելիությունը: «Աթեիզմը ոչ միայն աստծու մերժում է, այլև այդ մերժման միջոցով մարդու կեցության հաստատումը,— ասել է Կ. Մարքսը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений, М., 1956, стр. 598):

Ժողովրդական աթեիզմը, որպես հասարակական գիտակցության ձև, ունի նախապատմություն, զարգացման փուլեր: Այն ներառնում է հասարակության մինչկրոնական ամենաերկարատև շրջանի համրնդհանուր, ազատ աշխատանքի, ազատախոհության, կրոնական կաշկանդումներից զերծ ավանդույթները:

Հասարակության պատմության մեջ մինչև կրոնի առաջ գալը գոյություն է ունեցել երկարատև ոչ կրոնական ժամանակաշրջան, որի ընթացքում մարդկանց միջև ձևավորվող սոցիալական կապերի պայմաններում մշակվել են բարոյականության նորմեր, վերացարկման սաղմեր, տրամաբանության տարրեր: Հայտնի է, որ տարերայնորեն ձևավորվող մատերիալիստական պատկերացումներում արդեն առկա են եղել կրոնաիդեալիստական ըմբռնումների դեմ քննադատական մոտիվներ:

Հետագայում դասակարգային հասարակության առաջացման հետևանքով աստիճանաբար կրոնը դառնում է շահագործող դասակարգերի գաղափարախոսությունը: Ինչպես Վ. Ի. Լենինն է ասել. «Բոլոր և ամեն տեսակ ճնշող դասակարգերն իրենց տիրապետությունը պահպանելու համար երկու սոցիալական ֆունկցիայի կարիք են զգում. դահճի ֆունկցիայի և տերտերի ֆունկցիայի: Դահիճը պետք է ճնշի կեղեքվածների բողոքն ու վրդովմունքը: Տերտերը պետք է մխիթարի կեղեքվածներին, նրանց նկարագրի աղետների և զոհաբերությունների մեղմացման հեռանկարները (դա առանձնապես հարմար է անել՝ առանց երաշխավորելու այդպիսի հեռանկարների «իրագործելիությունը»...)» (**ԵԼԺ**, հ. 26, էջ 286): Հիշենք Կ. Մարքսի թևավոր խոսքը. «Կրոնը ժողովրդի հաշիշն է»:

Հայ ժողովրդի բանահյուսության հարուստ գանձարանում նույնպես պատշաճ տեղ են գրավել աթեիստական և ազատախոհական հայացքները: Մինչ գրավոր խոսքի առաջ գալը այդ գաղափարները դրսևորվել են բանավոր՝ աֆորիզմների, պատկերավոր խոսքի միջոցով: Ի հակադրություն աշխարհի և մարդու առաջացման կրոնաիդեալիստական մեկնաբանությունների, հայ ժողովրդի բանահյուսության մեջ հանդիպում ենք մատերիալիստական ու ազատախոհական բնույթի այնպիսի մտքերի, ինչպիսիք են՝ **մարդը բնությունից է, ոչ թե աստծուց, ոչ մի բան չի ծագում ոչնչից և ոչ մի բան չի վերածվում ոչնչի**: Այստեղ շեշտվում է, թե բնությունը հավերժ է, այն ոչ ոք չի ստեղծել:

Հակառակ կրոնաիդեալիստական այն պնդումների, թե աստվածն է ոչնչից ստեղծել աշխարհը և կյանքը, հայկական ժողովրդական աթեիզմում այն միտքն է արծարծվում, որ մարդն առաջ է եկել բնության իրական տարրերից՝ հողից, ջրից, օդից, կրակից:

Տակավին հեռավոր անցյալում ժողովրդական իմաստությունը կռահել է, որ մարդն անցողիկ է, իսկ բնությունը՝ հավերժ. բոլորս առաջ ենք գալիս հողից և վերադառնում ենք հողին:

Մատերիալիզմը, ինչպես նաև ժողովրդական աթեիզմը, տարբեր ժողովուրդների մոտ արտահայտվել է տարբեր կերպ, բայց նրանց իմաստը մեկն է: Հին աշխարհի մատերիալիստները բնության և մարդու առաջացումը համարում էին առանձին տարրերի՝ կրակի, օդի, ջրի, հողի, եթերի միասնության և փոխազդեցության արդյունք:

Հայկական ժողովրդական բանահյուսությունում կյանքի և մարդու առաջացման մասին տիրապետողը մատերիալիստական տեսակետն է, նյութական աշխարհի միասնականության գաղափարը: Վահագնի մասին առասպելում այլաբանորեն արտահայտված է մարդու ծագման մատերիալիստական ըմբռնումը: Հիրավի, Վահագնը առաջիններից էր, որ անվախորեն բարձրացավ երկինք, մենամարտեց ամենազորեղ աստված Բարշամի հետ, հաղթեց և նրանից վերցրեց հարդը, որը վերջինս հափշտակել էր ժողովրդից, վերադարձրեց նրան: Հարդի մի մասը թափվեց, և առաջացավ Ծիրկաթինը:

Մ. Խորենացին վկայում է, որ Վահագնը «...կռվել է վիշապների հետ ու հաղթել, և Հերակլեսի քաջագործություններին շատ նման բաներ էին երգում նրա մասին: Բայց ասում են նաև սա աստվածացրած է...» (Մ. Խորենացի, **Հայոց պատմություն**, Երևան, 1981, էջ 108):

**Կ.** Մարքսն ասել է. «Յուրաքանչյուր դիցաբանություն հաղթահարում, նվաճում և ձևավորում է բնության ուժերը երևակայության մեջ ու երևակայության օգնությամբ...» (Կ. Մարքս, **Քաղաքատնտեսության քննադատության** շուրջ, Երևան, 1948, էջ 271):

Հայ ժողովրդական ստեղծագործության մեջ ընդունվում է ոչ միայն աշխարհի-բնության առաջնությունը և կյանքի ծագումը մատերիայից, այլև արծարծվում է բնության, աշխարհի իմացության հարցը: Բնությունը, աշխարհը համարվում են ճանաչելի:

**Սասունցի Դավիթ** հերոսական էպոսում, ինչպես նաև **Գեղամա լեռներ, Գեղամա ծով, Տորք Անգեղ** առասպելներում արտացոլված է մատերիալիստական այն սկզբունքը, որ բնության և հասարակության երևույթները ոչ միայն հնարավոր է ճանաչել, այլ գործունեության միջոցով կարելի է վերափոխել: Աշխատանքի և ոչ թե գերբնական ուժերի արարիչ էության մասին են վկայում բազմաթիվ ասույթներ. «Աշխարհի տիրապետողը աշխատանքն է», «Մարդն ամեն ինչ կարող է անել», «Որտեղ շինականն է մտածում, այնտեղ աստված չկա», «Մարդն է իր ճանապարհը հարթում, ոչ թե աստված», «Բախտավորությունը երկնքից չի տրվում», «Աստծուն հետևողը երջանկություն չի գտնի, գիտության հետ գնացողը՝ կգտնի» (տե՛ս **Ընդդեմ խավարի**, Երևան, 1967, էջ 710):

Հայ աշխատավոր մարդը երբեք վերացականի, դրախտի վրա իր հույսը չի դրել, այլ դժվարությամբ կերտել է իր կյանքը: «Աստված ողորմած է ըստը անոթի կմընա», «Ռանչպար մարդը լավ է, քան իշխանը»:

Հայկական ժողովրդական իմաստությունը դեռ շատ հեռավոր անցյալում կարևորում է ոչ միայն զգայականի, այլև մտածողության դերը իմացության պրոցեսում: «Աչքին հավատա, ականջին հավատա, բայց գլխով մտածի»: «Աչքը հեռուն է տեսնում, իսկ մտածողությունը և՛ հեռու, և՛ էությունն է բացահայտում»:

Ճանաչողության պրոցեսում նախապատվությունը տրվում է պրակտիկային, որի վերաբերյալ ժողովրդական իմաստությունն ասում է. «Ինչ որ ստեղծվել է ձեռքով, լեզվով չես կարող ոչնչացնել», «Ինչ ցանես, այն էլ կհնձես», «Աղոթքով խոզին սրբազան չես դարձնի», «Աղոթքով գայլի բերանը չես փակի»:

Հայ ժողովուրդն իր աշխատանքային կենսափորձից ելնելով՝ գիտեր, որ բարիքը ոչ թե քարոզով, այլ աշխատանքով, ակտիվ գործունեությամբ է ստեղծվում: Ասվում է, որ աղքատ գյուղացին ճարեց եզներ իր արտը վարելու և ցանելու համար, բազմիցս գնաց տերտերի մոտ, որ նա օրհնի ցանքսը, բայց տերտերը հրաժարվում էր՝ ասելով, թե մեծամեծների ցանքն է օրհնելու, ժամանակ չունի: Խեղճ աղքատը տեսնելով, որ ցանքի ժամանակն անցնում է, առանց օրհնելու ցանեց, բայց մտքում երկյուղ ուներ, թե ցորենը չի ծլի, բերք չի լինի: Բայց հակառակն առացվեց. աղքատ գյուղացու արտը ծլեց, բազմացավ, տեկնողը հիացավ: Տերտերը պատա-

բաց արեց, որպեսզի աստված նրա արտը իրենը դարձնի, բայց ապարդյուն: Աղքատը իր փոքրիկ հողամասից ստացավ տասն անգամ ավելի բերք (տե՛ս **Նմուշներ հայկական հակակրոնական ֆոլկլորից**, Երևան, 1938, էջ 78): Աշխատանքի, ակտիվ գործունեությանն են վերաբերում հետևյալ ասույթները. «Մարդուն գնահատում են ոչ նրա խոսքով, այլ գործով», «Մի զարմացրու լեզվով, այլ զարմացրու գործով», «Որտեղ սկսվում են աչքը, ձեռքը, այնտեղ վերջանում է աստված»: Ժողովրդի վերոհիշյալ իմաստությունից պարզ երևում է, որ մարդիկ, իրենց անմիջական կենսափորձից ելնելով, առաջնությունը տվել են բնությանը, նյութին, ոչ թե կրոնին:

Դարավոր վեճերը հոգու և մարմնի, երկրի ու երկնքի, անդրշիրիմյան կյանքի, կրոնի և աթեիզմի մասին հայկական ժողովրդական բանահյուսության մեջ տարբերայնորեն լուծվում են հօգուտ մատերիալիզմի և աթեիզմի: Միջնադարյան **Երկինքը և երկիրը, Հոգին և մարմինը, Միայն առավոտ, Գայլը և աղջիկը, Ջանփոլադի մասին** պատմվածքներում հաղթում է մատերիալիստական սկզբունքը:

Ժողովրդական բանահյուսությունը հարուստ է նաև փիլիսոփայական խոհերով ու ընդհանրացումներով: Այդ են վկայում հետևյալ ասույթները. «Կաթիլ-կաթիլ ջրից գյոլ կեղնի», «Կաթ-կաթ ջուրը քար կփորե», «Ծաղիկը իր քոքին կբուսնի», «Ջուրը իր առվով կգնա», «Առանց կրակի ծուխ չի լինի», «Քամին չփչած, տերև չի շարժվի» (տե՛ս Ա. Տ. Ղանալանյան, **Առածանի**, Երևան, 1960):

Այստեղ մեծ տեղ է հատկացվում պատճառականության ըմբռնմանը, ըստ որի առանց պատճառի ոչ մի իրադարձություն տեղի չի ունենում բնության մեջ և հասարակական կյանքում: Պատճառականության մասին ժողովրդական աթեիզմի դրույթները հակադրվում են թելեոլոգիային՝ նըպատակի վերաբերյալ իդեալիստական և կրոնական ուսմունքին, ըստ որի ամեն ինչ աշխարհում նպատակամետ է, որովհետև այդպես է ստեղծել աշխարհի «արարիչը»:

Հայ ժողովրդական բանահյուսության մեջ արտահայտված են սոցիալական առումով հույժ կարևոր գաղափարներ հասարակության բևեռացման, դասակարգային բաժանման մասին: Այսպես. «Մեկը ունենալով կմեռնի, մեկն էլ չունենալով», «Դարը դատեց՝ դատարկ նստեց», «Աստված նստել է երկնքում, չի մտածում հացի մասին», «Ա՜խ, աստված, վա՜խ աստված, որին կուտաս սելով փետ, որին չես տա ցա՜խ, աստված» (տե՛ս նույն տեղը):

Միջնադարյան հայ նշանավոր քնարերգու Ֆրիկը դիպուկ է նկարագրել հասարակության սոցիալական շերտավորումը.

*Մեկին հազար գառնով մարի,*
*Մեկին ոչ մեկ չորքոտանի,*
*Մեկին բեհեզ և ծիրանի,*
*Մեկին բրդե շալ մի չանկի,*
*Մեկին հազար դեկան ոսկի,*
*Մեկին ոչ փող մի պղնձի.*
*Մեկին հազար հատ մարգարտի,*
*Մեկին ոչ ուլինկ մի ապակի...*
*Մեկին հարամըն յաջողի,*
*Մեկին հալալն կորուսի...*
*Մեկին հազար ձի և ջորի,*
*Մեկին ոչ ուլ մի, ո՛չ մաքի...*

Ժողովրդական աթեիզմում եկեղեցիները և վանքերը համարվում են շահագործման միջոց հոգևորականների ձեռքին: **Գել ու աղվես** պատմվածքի մեջ ասված է. «Գելն ու աղվես աղբեր կեղնին: Էն մեկ օր աղվես գիլուն կըսա.— Գել աղբեր, հարի եր՞ իդլմա շվար-շվար ոլորտինք. չէ՞ մարդիկ վանք շիքած ին. հոնի նստած անդատել կուտին, կը խմին, մեր ինչն ա պակաս, մենք լե շիքինք՝ իմալ վարդապետներ»:

Աշխատավոր մարդը հավուր պատշաճի է քննադատել եկեղեցականների բարքերը, հատկապես նրանց նիստն ու կացը: Այդ մասին են վկայում հետևյալ ասույթները. «Թե մարդ չդառնա, տերտեր խոմ կդառնա», «Սար ու ձոր, տերտերի փոր», «Ներսից սատանա, դրսից քահանա», «Սատանին հավատա, իսկ տերտերին՝ ոչ»: **Սլիկ երեց** պատմվածքում ժողովուրդը սրամիտ կերպով ցույց է տալիս քրիստոնեության «սրբազան» գրքի՝ ավետարանի հիերարխիայի «սրբազաններին»— Ադամի, Մաթոս աղայի, Նոյի, Աբրահամի, Մովսես մարգարեի, Դավիթ մարգարեի, Գաբրիել հրեշտակի ահավոր խարդախությունները, անբարոյականությունը, դավաճանությունը:

Պատմվածքի հերոս Սլիկ երեցը, չվախենալով վերոհիշյալների աստվածային անսահմանափակ զորությունից, հաղթում է նրանց. հարթում է ճանապարհ դեպի դրախտ: Դրախտի մոտ նրան դիմավորում է աստծու որդի Քրիստոսը և արգելում է Սլիկին դրախտ մտնել: Սլիկը բացականչում է. «—Հա՜յ աստված զքու տուն լե ավերե, որ դու շատ աղեկ մարդմ եղնիր՝ զքզի լե չընքըռնի, չընչարչրի: Դարձիր, կնի՛կ, դարձի երթանք, աստված քարուքանդ ու բրիշակ էնե հըմալ դրախտն, որ էդա խդար դավաճի չեղնի մարդու» (տե՛ս **Նմուշներ հայկական հակակրոնական ֆոլկլորից.** Երևան, 1938, էջ 6—10):

Միջնադարյան **Աղվեսն ու որսորդը** առակում նույնպես սրամիտ կերպով ծաղրըվում են հոգևոր սպասավորները: Որսորդը շներով հալածում և նեղում էր աղվեսին: Եվ աղվեսը դարձավ և ասաց. «Աղաչում եմ քեզ, ասա թե ինչի՞ համար ես ինձ նեղում»:

Եվ որդորդն ասաց. «Որպեսզի հանեմ քո մորթին»:

Աղվեսը կանգնեց և ասաց.

*«Տեր աստված, փառք քեզ,*
*որ սրա ուզածն այս է։*
*Իսկ ես կարծում էի,*
*թե ինձ ուզում է նշանակել*
*մեր գավառի հավարած*
*կամ թուչնանոցի վանահայր»։*

(տե՛ս Վարդան Այգեկցի, **Աղվեսագիրք**, Երևան, 1981, էջ 68):

Ժողովուրդն իր վրդովմունքն է արտահայտել կրոնական ծեսերի, հատկապես թաղման շռայլ արարողությունների դեմ, որոնք ցավոք տարբեր ձևերով շարունակվում են նաև մեր օրերում: Ժողովուրդը ձաղկել է նաև զոհաբերության ավանդույթը:

Ուշագրավ է միջնադարյան **Աղքատը և ավետարանը** ժողովրդական պարոդիան, որում ցույց է տրված աշխատավոր ժողովըրդի դժգոհությունը կրոնի «սրբազան» սկզբունքների հանդեպ:

**Աղքատն ու ավետարանը** միջնադարյան առակում ասված է. «Մի աղքատ... մտավ գյուղի եկեղեցին... Եվ այն աղքատ անձրևաթաց էր և քաղցած և հագել էր պատառոտված զգեստ և դողում էր և հոգնել էր ճանապարհից: Եվ ներս մտավ քահանան, սկսեց ժամ ասել: Առավ ավետարանը և կարդաց այն էջը, ուր գրված էր, թե «օտարական էի՝ ընդունեցիք ինձ, մերկ էի՝ հագցրիք ինձ, քաղցած էի՝ կերակրեցիք ինձ, ծարավ էի՝ հագեցրեցիք ինձ»: Այն աղքատը լսեց և ուրախացավ. «Այս ինձ համար է ասված և ահա շուտով կըկատարեն իմ կամքը»: Իսկ քահանան ժամն արձակեց և գնաց տուն և աղքատին թողեց եկեղեցու մեջ և հոգ չտարավ նրա մասին: Եվ աղքատն ասաց. «Այն գիրն, որ կարդաց նա, սուտ էր»: Եվ առավ ավետարանը, վրան քար դրեց և սուզեց ջրի մեջ: Եվ քահանան եկեղեցի գալով, ավետարանը չգտավ և աղքատին ասաց. «Ո՞ւր է ավետարանը»: Եվ աղքատն ասաց քահանային. «Ի՞նչ ես անում սուտ ավետարանը, և ես տարա ջուրը գցեցի»: Եվ քահանան բարկանալով սկսեց ծեծել աղքատին» (Վ. Այգեկցի, **Առակներ**, Երևան, 1981, էջ 54):

Աշխատավոր մարդը միշտ դատապարտել է «սրբազանների» արգահատելի գործելակերպը, ծաղրել, անարգանքի սյունին է գամել կրոնի սպասավորներին նրանց անբարոյական, ցոփ կյանքի համար: Հայտնի են **Տերտերոջ աղճիկը, Կասես, կասես, չես իգա, Պարնի գեղցի Մոսոյի հարսանիքը, Խոստովանահայրը** պատմըվածքները ու մի շարք առածներ, անեծքներ և այլն:

Ժողովրդական աթեիզմը ոչ միայն քըննադատում է հոգևորականների կողմից ժողովրդին կրոնի «սրբազան» ուսմունքով մոլորեցնելը, ընչաքաղցությունը, անբարոյական վարքը, այլև մերկացնում է հայրենիքի նկատմամբ նրանց դավաճանությունը:

**Սասունցի Դավիթ** էպոսում նշված է, որ երբ թշնամի թագավորներն իմացան, որ Մհերը պետք է Մատղավանքի մոտով գնա Սասուն, ապա պայմանավորվեցին նրա վանահոր հետ, որ նա Մհերի այդտեղով անցնելու մասին իրենց իմաց անի, որպեսզի նրանք սպանեն Մհերին: Վանահայրը համաձայնում է թշնամիների հետ, դավաճանում է իր ժողովրդին, մեծ գերաններով փակում են Մատղավանք տանող ճանապարհը, որպեսզի հանկարծակի հարձակվեն Մհերի զորքի վրա և ոչնչացնեն:

*«...Ողջ գերաններ թալե, ճամփեն փակեր են,*
*Որ դուշման գա մեզի բռնի—*
*էդ թալաք վանահոր սարքածն էր»։*

Մհերի զորքը մաքրում է ճանապարհը և գնում Մատղավանք: Վանահայրը նրանց կեղծավորաբար ընդունում է, կերակրում, քնեցնում, միևնույն ժամանակ սուրհանդակների միջոցով հայտնում «դուշմաններին»:

*«...յոթ թագավորի զորք էկե*
*Փաթթեր է վանքի բոլոր։*
*Էն յոթ թագավորի զորքին թիվ չկա*
*Վանահերն էլ էնոնց մեջ»։*

Մհերը իր քաջ զորքով ջարդում է թշնամու զորքը, վանահորը գերում է, բերում վանք և

*«Մհեր մեկ ձեռքով վերուց վանքի գերան,*
*Մեկելով բռնեց վանահոր մազեր,*
*Գլուխ դրեց գերանի տակ,*
*Գերան թողեց վեր գլխուն, ասաց.*
*— Էս վանքի անուն ըստուց ետ՝*
*Մատղավանք չը պիտի ըլնի,*
*Մատնավանք պիտի ըլնի,*
*Քանի որ վանահեր մատնություն արեց»։*

(տե՛ս **Սասունցի Դավիթ**, 1981, էջ 297—299)։

Հայ ժողովուրդն իր բազմադարյան պատմության ընթացքում ստեղծել է հազարավոր հեքիաթներ, երգեր, առասպելներ, ասացվածքներ և պատմվածքներ, որտեղ իր ուրույն տեղն են գրավում ազատախոհությունը, աթեիզմը։

Հիրավի, հայ ժողովրդական աթեիզմն իր բովանդակության խորությամբ, քննադատական մտքի սրությամբ, պատկերավորությամբ ու դիպուկությամբ ունի համընդհանուր ճանաչողական նշանակություն։ Այստեղ ամփոփված են ժողովրդական իմաստասիրությունն ու աշխարհայեցողությունը, ողջախոհությունը և կենսասիրությունը, որոնք մշտապես հակադրվել են կրոնին ու կրոնական ուսմունքներին։ Թերևս դա է պատճառը, որ ժողովրդական աթեիզմը խոր արմատներ է գցել հասարակության հոգևոր կյանքում։ Եվ պատահական չէ, որ «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ խնդիր դրվեց բարելավել բնակչության աթեիստական դաստիարակությունը, ավելի ակտիվորեն արմատավորել նոր, սոցիալիստական ծիսակատարությունները։ ՀԿԿ Կենտկոմի 1985 թ. հունվարյան պլենումում ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Անթույլատրելի է, երբ որոշ կուսակցական կոմիտեներ բարեհոգաբար են վերաբերվում դաստիարակության գործի վրա բացասաբար անդրադարձող առանձին երևույթների։ Սա վերաբերում է նախ և առաջ աթեիստական աշխատանքին։ Վերջին ժամանակներս հանրապետությունում նկատվող պաշտամունքային պրակտիկայի որոշ ակտիվացումը հիմնականում հետևանք է ինքնահանգստացման, այն կեղծ մտայնության, թե դա իբր սոսկ անմեղ տուրք է ավանդույթների»։

Այժմ, երբ կուսակցությունն առանձնապես կարևորում է բնակչության շրջանում գիտամատերիալիստական հայացքների ակտիվ պրոպագանդան, խիստ հրատապ են դառնում ժողովրդական աթեիստական ժառանգության համակողմանի լուսաբանումը, կրոնաբարոյական իդեալի քննադատությունը։ Մեր օրերում ժողովրդական աթեիզմի գաղափարները նիրավի չեն կորցրել իրենց կենսունակությունը և կարևոր տեղ են գրավում կուսակցության աթեիստական պրոպագանդայի զինանոցում։



# ԱՍՏՂԵՐԻ ՇԱՐԺՈՒՄՆԵՐՆ ՈՒ ԷՎՈԼՅՈՒՑԻԱՆ

**Լ. ՄԻՐԶՈՅԱՆ**
*Աստղագնացության միջազգային ակադեմիայի թղթակից անդամ*

ԵՐԿՆԱՅԻՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ շարժումների առաջին հետազոտությունները նվիրված էին Արեգակնային համակարգության մարմիններին ու գիսավորներին։ Երկնակամարում այդ մարմինների տեսանելի շարժումները դիտվում և ուսումնասիրվում էին դեռևս աստղագիտության զարգացման արշալույսին։

Մինչև XVI դարը գիտության մեջ անվերապահորեն իշխում էր Կլավդիոս Պտղոմեոսի մշակած ուսմունքը, որի համաձայն մեր մոլորակային համակարգության (և ընդհանրապես ամբողջ նյութական աշխարհի՝ Տիեզերքի) կենտրոնում գտնվում է Երկիրը, իսկ Արեգակն ու մոլորակները նրա շուրջը պտտվում են շրջանաձև ուղեծրերով, հավասարաչափ (հաստատուն արագություններով)։

Արեգակնային համակարգության այդպիսի երկրակենտրոն կառուցվածքի դեպքում մոլորակների դիտվող շարժումները բացատրելու համար արվում էր այն լրացուցիչ ենթադրությունը, որ բոլոր մոլորակները ոչ թե անմիջականորեն են պտտվում Երկրի շուրջը, այլ նրանք պտտվում են ինչ-որ երևակայական կետերի շուրջը, շրջանաձև ուղեծրերով (էպիցիկլերով), իսկ այդ կետերն իրենց հերթին պտտվում են Երկրի շուրջը, նույնպես շրջանաձև ուղեծրերով (դիֆերենտներով)։

Աստղագիտական դիտումների ճշտության աճին զուգընթաց զգալի տարբերություններ առաջ եկան մոլորակների՝ այս ձևով հաշված և դիտվող շարժումների միջև։ Ուստի, մոլորակների դիտվող շարժումների բացատրության համար աստղագետներն ստիպված էին ներմուծել նոր, հավելյալ էպիցիկլեր։ Այլ կերպ ասած, հարկ էր ենթադրել, որ մոլորակը պտտվում է մի էպիցիկլով, որի կենտրոնը պտտվում է մի երկրորդ էպիցիկլով, վերջինիս կենտրոնը՝ մի երրորդ էպիցիկլով և այսպես շարունակ, իսկ վերջին էպիցիկլի կենտրոնն ինքը պտտվում է Երկրի շուրջը։

Այսպիսով, դիտումների ճշտության աճն իր հետ բերում էր մոլորակների դիտվող շարժումների բացատրության համար անհրաժեշտ էպիցիկլերի թվի անընդհատ աճ։

Արեգակնային համակարգության կառուցվածքի այդպիսի բարդ ու խճճված պատկերի հետ միասին Պտղոմեոսի **Երկրակենտրոն ուսմունքը** չէր շոշափում մոլորակների շարժումների բնույթը և պատճառները։ Այն ընդունվում էր որպես անքննելի և վերուստ տրված մի բան։

Աշխարհի Երկրակենտրոն ուսմունքը կրքոտ կերպով պաշտպանվում էր եկեղեցու կողմից և դարեր շարունակ իշխում էր ամենուր։ Այդպիսին էր վիճակը մինչև Արեգակնակենտրոն ուսմունքի երևան գալը։

XVI դարում Նիկոլայ Կոպեռնիկոսը հիմնավորեց ու մշակեց իր **Արեգակնակենտրոն ուսմունքը,** որը տալիս էր մոլորակային համակարգության կառուցվածքի ճիշտ պատկերը. համակարգության կենտրոնում գտնվում է Արեգակը, իսկ մոլորակները, այդ թվում Երկիրը, անմիջականորեն պտտվում են նրա շուրջը։ Նոր ուսմունքը բնական բացատրություն էր տալիս մոլորակների տեսանելի շարժումներին և արդեն էպիցիկլերի կարիք չուներ։

Երկրակենտրոն ուսմունքը հսկայական հեղաշրջում կատարեց մեր պատկերացումներում և, չնայած հետադիմության համառ դիմադրությանը, ամուր մտավ գիտության գանձարանը։

Սակայն Կոպեռնիկոսի աշխատությունը պարունակում էր Պտղոմեոսի ուսմունքից եկող այն սխալ ենթադրությունը, թե մոլորակների շարժումները կատարվում են շրջանաձև ուղեծրերով և հավասարաչափ։

Այդ ավանդական սխալը շուտով շտկվեց

Իոհան Կեպլերի կողմից: Օգտագործելով երկնակամարում Մարս մոլորակի շարժման՝ Տիխո Բրագեի կատարած բազմամյա դիտումները՝ նա XVII դարի սկզբում հայտնագործեց **Արեգակի շուրջը մոլորակների շարժման օրենքները,** որոնք ներկայումս հայտնի են Կեպլերի անունով: Կեպլերի առաջին օրենքի համաձայն, մոլորակներն Արեգակի շուրջը, ընդհանրապես, պտտվում են էլիպսաձև ուղեծրերով:

Ըստ որում Արեգակը գտնվում է համապատասխան էլիպսների փոկուսներից մեկում, որն ընդհանուր է Արեգակնային համակարգի բոլոր մոլորակների համար: Կեպլերի երկրորդ օրենքը հավաստում է, որ մոլորակի շարժման արագությունը Արեգակի շուրջը հաստատուն չէ, փոփոխվում է և պայմանավորված է նրանից ունեցած հեռավորությամբ: Այն ամենամեծն է մոլորակի Արեգակին ամենամոտ դիրքում, աստիճանաբար նվազում է Արեգակից հեռանալիս և ամենափոքրն է նրա՝ Արեգակի նկատմամբ ամենահեռավոր դիրքում: Վերջապես Կեպլերի երրորդ օրենքի համաձայն, որքան ավելի մեծ է մոլորակի միջին հեռավորությունն Արեգակից, այնքան ավելի երկար ժամանակամիջոցում է նա պտտվում Արեգակի շուրջը:

Իսկ ինչո՞ւ են մոլորակներն Արեգակի շուրջը պտտվում Կեպլերի օրենքներով, և ինչո՞վ են պայմանավորված նրանց շարժումները: **Այդ հարցերի ճիշտ պատասխանը տվեց Իսահակ Նյուտոնը XVII դարի վերջում: Նա գտավ, որ այդ շարժումների պատճառը Արեգակի ու մոլորակների միջև գործող ձգողական ուժերն են:** Իսկ նրանք որոշվում են մոլորակների շարժման՝ Կեպլերի օրենքներից անմիջականորեն բխող մի օրենքով, որի համաձայն երկու մարմինների փոխադարձ ձգողության ուժը համեմատական է փոխազդող մարմինների զանգվածներին և հակադարձ համեմատական նրանց միջև եղած հեռավորության քառակուսուն: Բնության մեջ ամենուր իշխող այդ օրենքը ներկայումս հայտնի է որպես **տիեզերական ձգողության Նյուտոնի օրենք:**

Նյուտոնը լուծեց հետևյալ ընդհանուր խնդիրը (երկու մարմնի խնդիր)՝ եթե երկու մարմին փոխազդում են տիեզերական ձգողականության օրենքով, ապա ինչպիսի՞ն պետք է լինեն նրանց հնարավոր շարժումները: Նա ցույց տվեց, որ կախված այդ մարմինների շարժման հարաբերական արագություններից (մեծություններից ու ուղղություններից) շարժումները կարող են լինել երեք տեսակի.

1. Երկու մարմինն էլ պտտվում են ընդհանուր ծանրության կենտրոնի շուրջը էլիպսաձև (մասնավոր դեպքում՝ շրջանաձև) ուղեծրերով: 2. Մարմիններն իրարից հեռանում են պարաբոլաձև կամ հիպերբոլաձև ուղեծրերով: 3. Մարմիններն ընկնում են իրար վրա:

Այսպիսով, Նյուտոնն առաջին անգամ ապացուցեց, որ ընդհանուր ձգողական դաշտում երկնային մարմինների շարժումների ուղեծրերը կարող են լինել ինչպես էլիպսաձև, այնպես էլ պարաբոլաձև կամ հիպերբոլաձև: Այս վերջին դեպքերում մարմիններն ունեն ընդհանուր ձգողական դաշտի հաղթահարման համար անհրաժեշտ արագություններ և հեռանում են իրարից:

Գործնականում միշտ ավելի հարմար է քննարկել ավելի փոքր զանգված ունեցող մարմնի (արբանյակի) հարաբերական շարժումը ավելի մեծ զանգված ունեցող մարմնի (գլխավորի) շուրջը: Այսպես, օրինակ, մոլորակային համակարգում սովորաբար դիտվում է մոլորակի շարժումը (պտույտը) Արեգակի շուրջը, որն իր ազդեցությամբ ամբողջովին որոշում է համակարգի բոլոր անդամների (մեծ ու փոքր մոլորակներ, գիսավորներ և այլ) շարժումները: Նրանցից յուրաքանչյուրը Արեգակի շուրջը պտտվում է էլիպսաձև ուղեծրով՝ Կեպլերի օրենքներով: Արեգակնային համակարգի մյուս անդամների ազդեցությունները մոլորակների շարժումների վրա շատ փոքր են:

Երբ մարմինների շարժումները տեղի են ունենում փակ (էլիպսաձև կամ շրջանաձև) ուղեծրերով, դրանք պարբերական են: Հենց այդպիսի շարժումներ են կատարում մոլորակները Արեգակի շուրջը: Մնացած դեպքերը կապված են ոչ պարբերական շարժումների հետ և, բնականաբար, ավելի հազվադեպ են դիտվում:

Տիեզերական ձգողականության Նյուտոնի օրենքից բխող այս հետևությունները են ընկած Երկրի և այլ մոլորակների արբանյակների ու տարբեր տեսակի տիեզերական հրթիռների արձակման հաշվարկների հիմքում:

Հետաքրքիր է նշել, որ այդ հարցին նըվիրված իր հետազոտություններից մեկում Նյուտոնը, ՍՍՀՄ-ում Երկրի առաջին արբանյակի արձակումից ավելի քան երեք ու կես դար առաջ, գրել է Երկրի արհեստական արբանյակ ստեղծելու սկզբունքային հնարավորության մասին: Սակայն տեխնիկայի ցածր մակարդակի պատճառով այս հնարավորությունն այն ժամանակ ընկալվում էր միայն որպես երկու մարմնի խնդրի լուծման մի պատկերավոր օրինակ:



Հետագա ուսումնասիրությունը հանգեցրեց այն շատ կարևոր եզրակացության, որ տիեզերական ձգողականության Նյուտոնի օրենքը և երկնային մարմինների շարժումների բնույթի ու օրինաչափությունների վերաբերյալ նրանից բխող հետևությունները գործում են Տիեզերքում ամենուր, մասնավորապես՝ աստղային աշխարհում:

Աստղերի աշխարհում տիեզերական ձըգողականության Նյուտոնի օրենքի առաջին վճռական ապացույցն ստացվեց կըրկնակի աստղերի դիտումներից: Կրկնակի աստղը երկու, փոխադարձ ձգողականությամբ իրար հետ կապված, աստղերի համակարգ է, որում բաղադրիչ-աստղերը պտտվում են ընդհանուր ծանրության կենտրոնի շուրջը, էլիպսաձև ուղեծրերով: Մի շարք բարենպաստ դեպքերում սպասվող շարժումներն անմիջականորեն դիտվում են:

Նյուտոնը ցույց տվեց նաև, որ Կեպլերի երրորդ օրենքում պետք է առկա լինի կրկնակի համակարգի բաղադրիչների (օրինակ, Արեգակ-մոլորակ) զանգվածների գումարը: Քանի որ Արեգակնային համակարգում կենտրոնական մարմնի (Արեգակի) զանգվածը մոտ 1000 անգամ ավելի մեծ է, քան ամենամեծ մոլորակինը (Յուպիտերինը), ապա այդ գումարային զանգվածը (Արեգակ-մոլորակ) գրեթե հաստատուն է բոլոր մոլորակների համար: Բնականաբար, Կեպլերը չէր կարող նկատել այդ հաստատուն մեծությունն իր երրորդ օրենքում: Միանգամայն այլ է վիճակը կրկնակի աստղերի դեպքում: Այն տարբեր կըրկնակի աստղերի համար տարբեր է: Ուստի կրկնակի աստղերի նկատմամբ Նյուտոնի կողմից ընդհանրացված Կեպլերի երրորդ օրենքի կիրառությունը հնարավորություն է ընձեռում որոշելու բաղադրիչ-աստղերի զանգվածները: Դա աստղերի զանգվածների որոշման միակ անմիջական մեթոդն է:

Հետագա դարերում հայտնաբերվեցին և ուսումնասիրվեցին աստղերի ավելի բազմաքանակ համակարգեր՝ եռակի, քառակի ու ավելի մեծ բազմակիության աստղեր (բազմաստղեր) և հարյուրավոր, հազարավոր ու նույնիսկ միլիոնավոր աստղեր պարունակող աստղակույտեր: Այդ համակարգերում նույնպես ընդհանուր ծանրության կենտրոնի շուրջը աստղերի շարժումները կատարվում են էլիպսաձև ուղեծիրներով:

Միայն աստղերի շատ հազվադեպ տեղի ունեցող մերձեցումների ժամանակ համակարգի որոշ աստղեր կարող են ձեռք բերել ընդհանուր ձգողական դաշտը հաղթահարելու համար անհրաժեշտ արագություններ և հեռանալ համակարգից: Այդ երևույթի պատճառով աստղակույտերում աստղերի մերձեցումները ժամանակի ընթացքում հարյուր միլիոնավոր և միլիարդավոր տարիների ընթացքում հանգեցնում են նրանց աստիճանական քայքայման:

1925 թ. Յան Օորտը ցույց տվեց, որ ձգողական դաշտում պտտական շարժումները բնորոշ են նաև շուրջ հարյուր միլիարդ աստղ պարունակող մեր աստղային համակարգի՝ Գալակտիկայի համար: Նրա կազմում գտնվող բոլոր մարմինների՝ աստղերի, նրանց տարբեր բազմակիության համակարգերի և միգամածությունների դիտվող շարժումները վկայում են այն մասին, որ նրանք բոլորը պտտվում են Գալակտիկայի կենտրոնի շուրջը: Արեգակի շրջակա աստղերի համար այդ հսկայական համակարգի կենտրոնի շուրջը մեկ պտույտի տևողությունը կազմում է մոտ 200 միլիոն տարի:

Երկնային մարմինների շարժումների խոր ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այդ շարժումները սերտորեն առնչվում են համապատասխան մարմինների առաջացման և էվոլյուցիայի հետ: Այդ բանի շնորհիվ շարժումների ուսումնասիրությունը կարող է հանգեցնել էվոլյուցիոն նշանակություն ունեցող կարևոր արդյունքների՝ աստղերի ու նրանց համակարգերի վերաբերյալ:

Գալակտիկայում առանձին աստղերի շարժումների հետևանքով տեղի են ունենում նրանց պատահական մերձեցումներ, որոնք ուղեկցվում են իրենց էներգիաների փոխանակությամբ: Ամեն մի երեք աստղի մերձեցման հետևանքով աստղերից մեկը կարող է ձեռք բերել ընդհանուր ձգողական դաշտը հաղթահարելու համար բավարար էներգիա (արագություն) և հեռանալ մյուս երկուսից, իսկ վերջիններս, մնալով իրար մոտ, կարող են կազմել ֆիզիկական զույգ: Այս ձևով հնարավոր է մի նոր կրկնակի աստղի առաջացումը: Հակառակ պրոցեսը՝ առանձին աստղերի

պատահական մերձեցումները կրկնակի աստղերի հետ, ընդհակառակը, կարող է հանգեցնել համապատասխան կրկնակի աստղերի քայքայման:

Գալակտիկայում իրար հակառակ այս երկու պրոցեսների միջև ժամանակի ընթացքում պետք է հաստատվի այնպիսի հավասարակշռություն, երբ աստղերի պատահական մերձեցումների հետևանքով նոր առաջացող կրկնակի աստղերի թիվը, միավոր ժամանակում, հավասար է նույն ժամանակում քայքայվող զույգերի թվին: Հետևաբար, եթե ենթադրենք, որ կրկնակի աստղերը, իրոք, առաջանում են առանձին աստղերի պատահական մերձեցումների հետևանքով, ապա պետք է մտածենք, որ մինչև այդպիսի հավասարակշռության հաստատվելը նրանց ընդհանուր թիվը չի կարող շատ ավելի փոքր լինել, քան քայքայվող զույգերի թիվն է:

Մինչդեռ աստղագիտական դիտումների հիման վրա Վիկտոր Համբարձումյանը ցույց է տվել, որ Գալակտիկայում ներկայումս կրկնակի աստղերի քայքայման պրոցեսները մոտ միլիոն անգամ ավելի հաճախ են տեղի ունենում, քան նոր կրկնակի աստղերի առաջացման պրոցեսները:

Այդ փաստից բխում է, որ կրկնակի աստղերը Գալակտիկայում չեն առաջացել նախկինում գոյություն ունեցած առանձին աստղերի պատահական մերձեցումների հետևանքով: Հետևաբար, պետք է ընդունել, որ **կրկնակի աստղի բաղադրիչները ձևավորվել են իրար հետ, այսինքն՝ ունեն ընդհանուր ծագում:**

Այս սկզբունքային եզրակացությունն օրինաչափ է նաև ավելի մեծ թվով աստղեր պարունակող համակարգերի, օրինակ բազմաստղերի ու աստղակույտերի համար:

Քննարկված դեպքերում շարժումների նմանությունը և պարբերականությունը համակարգերում հետևանք է աստղերի ընդհանուր ծագման:

Հակառակ եզրակացությունը ոչ միշտ է ճիշտ: Այսպես, օրինակ, ինչպես վերը նշվեց, աստղակույտերում աստղերի պատահական մերձեցումների ժամանակ որոշ աստղեր ձեռք են բերում համակարգի ընդհանուր ձգողական դաշտը հաղթահարելու համար բավարար արագություն և հեռանում են նրանից: Ուստի այդ աստղերի շարժումների դիտվող տարբերությունը աստղակույտի մնացած աստղերի շարժումներից չի կարող դիտվել որպես ապացույց այն բանի, թե նրանք չունեն ընդհանուր ծագում:

Աստղերի մերձեցումների հետևանքով աստղակույտերի աստիճանական քայքայման օրինակը միաժամանակ ցույց է տալիս, որ Գալակտիկայում կարող են լինել աստղերի նաև «անկանոն» (ոչ պարբերական) շարժումներ, բաց (պարաբոլաձև կամ հիպերբոլաձև) ուղեծրերով, որոնք հանգեցնում են համապատասխան համակարգերի էվոլյուցիային:

Աստղերի այդպիսի «անկանոն» շարժումների բացահայտումն ու ուսումնասիրությունը փաստորեն սկսվեցին 1947 թ., նոր տիպի աստղային համակարգերի՝ աստղասփյուռների, հայտնագործումից հետո:

Առաջին անգամ գիտականորեն հիմնավորվեց այն սկզբունքային նշանակություն ունեցող պատկերացումը, որ Գալակտիկայում միլիարդավոր տարիներ առաջ (մեզ ամենամոտ աստղը՝ Արեգակը, առնվազն հինգ միլիարդ տարեկան է) սկսված աստղառաջացման պրոցեսը շարունակվում է նաև մեր դարաշրջանում, աստղասփյուռներում:

Այդ նոր պատկերացումը գիտության մեջ մտավ Բյուրականի աստղադիտարանի հետազոտությունների շնորհիվ:

Աստղասփյուռների երիտասարդ լինելու վճռական փաստարկներից մեկը հենց նրանց բաղադրիչ-աստղերի «անկանոն» շարժումներն էին:

Աստղասփյուռների՝ որպես Գալակտիկայում աստղառաջացման օջախների, հայտնագործումից անմիջապես հետո, 1949 թ., նրանց ներսում գործող ուժերի վերլուծության հիման վրա, Վիկտոր Համբարձումյանը կանխագուշակեց այդ համակարգերի լայնացման երևույթը: Լայնացման միջին արագության և աստղասփյուռների մոտավոր չափերի օգնությամբ գնահատվեց աստղասփյուռների տարիքի վերին սահմանը՝ ընդամենը տասը միլիոն տարվա կարգի: Տարիքի այս գնահատականը շուրջ հազար անգամ փոքր է Գալակտիկայի աստղերի մեծամասնության, այդ թվում՝ Արեգակի, տարիքից: Այս փաստից անմիջականորեն բխում էր, որ աստղասփյուռները, հետևաբար նաև նրանց կազմում եղած աստղերը նոր ձևավորված, չափազանց երիտասարդ գոյացումներ են: Ուստի պետք է ընդունել, որ աստղասփյուռները Գալակտիկայում այն օջախներն են, որտեղ ներկայումս տեղի են ունենում աստղառաջացման երևույթներ:

Աստղասփյուռների լայնացումը, դիտողական տվյալների օգնությամբ, առաջինը



հաստատեց Ադրիան Բլաաուն, 1952 թ.: Նա ցույց տվեց, որ երկնակամարում աստղերի դիտվող շարժումները (տարածական շարժումների երկնակամարի վրա պրոեկտվող բաղադրիչները) վկայում են, որ Ցետա Պերսեուսի աստղի շուրջը դիտվող մոտակա աստղասփյուռը ներկայումս լայնանում է, իսկ նրա տարիքը, գնահատված լայնացման միջին արագության և աստղասփյուռի չափերի հիման վրա, կազմում է ընդամենը մի քանի միլիոն տարի:

Համանման հաստատումներ ստացվեցին նաև մի շարք այլ մոտակա աստղասփյուռների համար:

Բացահայտվեց, որ աստղասփյուռներում աստղերի «անկանոն» այդ համակարգերի լայնացումը և ցրումը հանգեցնող շարժումների մասին են վկայում նաև աստղասփյուռների կազմի մեջ մտնող աստղերի տեսագծային արագությունները (տարածական արագությունների տեսագծի ուղղությամբ դիտվող բաղադրիչները), որոնք որոշվում են Դոպլերի սկզբունքով, նրանց սպեկտրների գծերի տեղաշարժերի հիման վրա:

Այս արդյունքները էապես փոխեցին գիտության մեջ երկար ժամանակ իշխող պատկերացումը աստղային համակարգերի դինամիկական կայունության մասին:

Մինչև աստղասփյուռների հայտնագործումը բոլոր աստղային համակարգերը համարվում էին դինամիկական տեսակետից կայուն: Ընդունվում էր, որ այդ պատճառով նրանք կարող են գոյատևել առնվազն հարյուր միլիոնավոր և ավելի տարիներ: Սակայն աստղասփյուռների հայտնագործումից հետո պարզ դարձավ, որ Գալակտիկայում գոյություն ունեն նաև այնպիսի աստղային համակարգեր, որոնք իրենց ձևավորման հատուկ բնույթի պատճառով ի սկզբանե դինամիկորեն անկայուն են և այդ պատճառով ներկայումս լայնանում են:

Աստղասփյուռների ձևաբանական ուսումնասիրությունը ցույց տվեց, որ նրանց կազմում հանդիպում են ակտիվ աստղառաջացման տիրույթներ՝ աստղերի բազմակի համակարգերի ձևով, որոնք օժտված են շատ ավելի մեծ աստիճանի դինամիկական անկայունությամբ:Այդպիսի համակարգերի համար շատ բնորոշ է յուրօրինակ տարածական կառուցվածքը: Այն էապես տարբերվում է մինչ այդ հայտնի աստղային համակարգերի կառուցվածքից: Պարզվել է, որ հենց այդ է պատճառը, որ նրանք դինամիկական տեսակետից անկայուն են:

Կառուցվածքի այդ տարբերությունը կարելի է պարզաբանել հետևյալ կերպ: Երկու աստղից կազմված համակարգերում՝ կրկնակի աստղերում բաղադրիչ-աստղերը պտտվում են համակարգի ծանրության կենտրոնի շուրջը, և նրանց շարժումները տեղի են ունենում Կեպլերի օրենքներով, էլիպսաձև ուղեծրերով: Հետևաբար, այդ շարժումները պարբերական են և կարող են շարունակվել շատ երկար ժամանակ: Այս դեպքում համակարգերն օժտված են դինամիկական կայունությամբ:

Ավելի մեծ թվով աստղերից կազմված համակարգերում մեծ մասամբ կառուցվածքն այսպիսին է.

1. Եռակի աստղը կազմված է մեկ կրկնակի աստղից, որից անհամեմատ ավելի մեծ հեռավորության վրա գտնվում է երրորդ բաղադրիչ-աստղը: Այս եռակի աստղը նման է մի կրկնակի աստղի, որի բաղադրիչներից մեկն ինքը կրկնակի աստղ է: Կրկնակի աստղի բաղադրիչները պտտվում են նրա ծանրության կենտրոնի շուրջը, իսկ կրկնակի աստղն ինքը, որպես մի աստղ, երրորդ առանձին աստղի հետ պտտվում է եռակի աստղի ընդհանուր ծանրության կենտրոնի շուրջը:

2. Քառակի աստղը կազմված է երկու կրկնակի աստղերից, որոնց փոխադարձ հեռավորությունն անհամեմատ ավելի մեծ է կրկնակի աստղերի բաղադրիչների փոխադարձ հեռավորություններից: Նման կառուցվածք ունեցող քառակի աստղում ամեն մի կրկնակի աստղի բաղադրիչները շարժվում են նրա ծանրության կենտրոնի շուրջը, իսկ կրկնակի աստղերն իրենք, որպես առանձին բաղադրիչներ՝ քառակի աստղի ընդհանուր ծանրության կենտրոնի շուրջը:

3. Հնգակի աստղը կազմված է երկու կրկնակի աստղից, որոնց փոխադարձ հեռավորությունները բավարարում են նախորդ պայմանին, և մեկ առանձին աստղից, որը գտնվում է նրանցից շատ ավելի մեծ հեռավորության վրա:

4. Ավելի մեծ բազմակիության աստղային համակարգի կառուցվածքը բավարարում է նախորդ պայմաններին:

Բոլոր քննարկված դեպքերում բաղադրիչ-աստղերի շարժումները քիչ են տարբերվում Կեպլերյան շարժումներից և կարող են դիտվել որպես Կեպլերյան շարժումների գումար: Այսպիսով, նման կա-

ռուցվածք ունեցող բազմաստղերում բաղադրիչ-աստղերի շարժումները Կեպլերյան կամ գրեթե Կեպլերյան բնույթ ունեն: Հետևաբար, այդ բազմաստղերում աստղերի շարժումները պարբերական կամ համարյա պարբերական են և ժամանակի ընթացքում կարող են մնալ գրեթե անփոփոխ:

Ակնհայտ է, որ նման կառուցվածք ունեցող բազմաստղերը, որոնք ստացել են **սովորական տիպի բազմաստղեր** անվանումը, պետք է օժտված լինեն դինամիկական կայունությամբ:

Գոյություն ունեն, սակայն, այնպիսի բազմաստղեր, որոնց կառուցվածքը խիստ տարբերվում է վերոհիշյալ տիպի բազմաստղերի կառուցվածքից, և այդ պատճառով նրանց բաղադրիչ-աստղերի շարժումներն այլ կերպ են կատարվում:

Այդպիսի բազմաստղերի կառուցվածքի համար ամենաբնորոշ հատկությունն այն է, որ անկախ նրանց անդամների ընդհանուր թվից, կարելի է նշել առնվազն երեք բաղադրիչ-աստղ, որոնց փոխադարձ հեռավորությունները միևնույն կարգի մեծություններ են (տարբերվում են ոչ ավելի, քան երեք անգամ): Այսպիսի կառուցվածք ունի, օրինակ, Օրիոնի աստղափնջում գտնվող նշանավոր Տրապեցիա բազմաստղը: Նրա անունով էլ վերոհիշյալ կառուցվածք ունեցող բազմաստղերը կոչվում են **Օրիոնի Տրապեցիայի տիպի** կամ ուղղակի **Տրապեցիայի տիպի բազմաստղեր:**

Տրապեցիայի տիպի բազմաստղերում բաղադրիչ-աստղերի շարժումները խիստ տարբերվում են Կեպլերյան բնույթի շարժումներից: Նրանք պարբերական չեն և «անկանոն» են, որի պատճառով Տրապեցիայի տիպի բազմաստղերը դինամիկական առումով խիստ անկայուն են: Այլ կերպ ասած, տարածության մեջ Տրապեցիայի տիպի կառուցվածք ունեցող բազմաստղերը չեն կարող երկար ժամանակ գոյատևել և պետք է շատ արագ քայքայվեն:

Տրապեցիայի տիպի բազմաստղերը նրանց ներսում բաղադրիչ-աստղերի բնույթով նման են աստղակույտերին և նրանցից տարբերվում են միայն իրենց բաղադրիչ-աստղերի փոքր թվով: Աստղակույտերի հետ նրանց այդ նմանությունը հնարավորություն է ընձեռում Տրապեցիայի տիպի բազմաստղերի քայքայման համար պահանջվող ժամանակամիջոցը, այսինքն՝ նրանց կյանքի տևողությունը, գնահատել աստղակույտերի համար Վիկտոր Համբարձումյանի մշակած եղանակով:

Այդ եղանակի կիրառությունը ցույց է տվել, որ Տրապեցիայի տիպի տարածական կառուցվածք ունեցող բազմաստղը չի կարող, որպես այդպիսին, իր գոյությունը պահպանել ավելի երկար ժամանակ, քան անհրաժեշտ է ընդհանուր ծանրության կենտրոնի շուրջը նրա բաղադրիչների մի քանի պտույտի համար: Իսկ այդ ժամանակամիջոցը չի անցնում մի քանի միլիոն տարուց: Ուստի Տրապեցիայի տիպի բազմաստղի տարիքը մի քանի միլիոն տարի է: Մյուս կողմից Տրապեցիայի տիպի բազմաստղի քայքայման ժամանակամիջոցը պետք է կախված լինի այդ համակարգի լրիվ էներգիայի նշանից: Տարիքի վերոհիշյալ գնահատականը ստացվել է Տրապեցիայի տիպի բացասական լրիվ էներգիա ունեցող բազմաստղերի համար:

Դրական լրիվ էներգիա ունեցող Տրապեցիայի տիպի բազմաստղերի կյանքի տևողությունը դրանից շատ ավելի կարճ է՝ ընդամենը մի քանի հարյուր հազար տարուց ոչ ավելի:

Այս արդյունքներից բխում է, որ անկախ լրիվ էներգիայի նշանից, Տրապեցիայի տիպի բազմաստղերը աստղափնջերի ամենաերիտասարդ բնակչության օբյեկտներից են: Տրապեցիայի տիպի բազմաստղերի երիտասարդության մասին այս կարևոր եզրակացությունը առաջին անգամ արվել է՝ ելնելով նրանց դինամիկական անկայունության վերաբերյալ պատկերացումից:

Հետագայում աստղերի առաջացման և էվոլյուցիայի պրոբլեմի համար այդ առանձնահատուկ կարևորություն ունեցող եզրակացության մի շարք հաստատումներ ստացվել են Տրապեցիայի տիպի բազմաստղերի անմիջական դիտումների հիման վրա:

Մինչ այդ հաստատումների քննարկումը նշենք, որ որոշ դեպքերում բազմաստղը կարող է չունենալ Տրապեցիայի տիպի տարածական կառուցվածք, բայց երկնակամարի վրա կարող է դիտվել որպես Տրապեցիայի տիպի համակարգ՝ բարենպաստ պրոյեկտման շնորհիվ: Հաշվումները ցույց են տվել, որ պրոյեկտման հետևանքով որպես Տրապեցիա դիտվող բազմաստղերի (կեղծ տրապեցիաների) քանակը չի կարող գերազանցել նրանց դիտվող ընդհանուր քանակի մեկ տասներորդ մասը: Ուստի, երբ մենք դիտում ենք,



ասենք, 100 Տրապեցիայի տիպի բազմաստղ, ապա կարող ենք ասել, որ նրանցից առնվազն 90-ը ունի Տրապեցիայի տիպի տարածական կառուցվածք, այսինքն՝ իսկական Տրապեցիաներ են:

Իսկ ինչպիսի՞ն է իսկական Տրապեցիաների աստղային կազմը: Տրապեցիաների երիտասարդության վերաբերյալ վերոհիշյալ եզրակացության տեսակետից կարևոր այս հարցի պատասխանը առաջին լուրջ փաստարկն էր նրա օգտին: 50-ական թվականների սկզբին Վիկտոր Համբարձումյանը, բազմաստղերի վերաբերյալ դիտողական տվյալների վերլուծության հիման վրա, եզրակացրեց, որ իսկական Տրապեցիաների մեծ մասը կազմված է շատ երիտասարդ աստղերից:

Այլ կերպ ասած, պարզվեց, որ Տրապեցիայի տիպի բոլոր բազմաստղերը կազմված են շատ երիտասարդ աստղերից, իսկ ծեր աստղերից կազմված բազմաստղերի մեջ չկան Տրապեցիայի տիպի կառուցվածք ունեցող բազմաստղեր: Դրա պատճառն այն է, որ մինչև իսկական Տրապեցիաների բաղադրիչ-աստղերի ծերանալը իրենք՝ բազմաստղերը, լրիվ քայքայվում են: Տրապեցիայի տիպի բազմաստղերի անկայունության և արագ քայքայման փաստը սկզբունքային նշանակություն ունի աստղերի էվոլյուցիայի մի կարևոր օրինաչափության հաստատման առումով, որի մասին արդեն խոսվել է կրկնակի աստղերի առնչությամբ: Խոսքը վերաբերում է աստղերի խմբական առաջացմանը:

Տրապեցիայի տիպի բազմաստղերի քայքայումը վկայում է, որ բազմաստղ կազմող աստղերն առաջանում են իրար հետ, իսկ նրա քայքայումից հետո շարունակում իրենց կյանքը համակարգից դուրս: Այլ կերպ ասած, Գալակտիկայում դիտվող միայնակ աստղերի առնվազն մեծ մասը ձևավորվում է ֆիզիկական համակարգերում, տվյալ դեպքում՝ Տրապեցիայի տիպի բազմաստղերում: Իսկ դա նշանակում է, որ **աստղերն առաջանում են խմբերով,** այսինքն՝ **աստղառաջացման պրոցեսը կրում է խմբական բնույթ:** Ընդ որում նոր ծնվող աստղախմբերը դինամիկական տեսակետից լինում են ինչպես կայուն, այնպես էլ անկայուն: Նրանցից առաջինները համեմատաբար կարճ ժամանակամիջոցում քայքայվում են, իսկ երկրորդները՝ մնում: Ընդ որում նոր առաջացող բազմաստղերի մեծ մասն ունի Տրապեցիայի տիպի կառուցվածք, հետևաբար, դինամիկական տեսակետից անկայուն է: Չնայած դրան, ներկայումս Գալակտիկայում դիտվող բազմաստղերի մեծ մասը դինամիկորեն կայուն է: Այդ դիտվող փաստն ունի շատ պարզ բացատրություն: Անկայուն բազմաստղերը բավական արագ քայքայվում են կա՛մ ամբողջովին, կա՛մ էլ դուրս շպրտելով (կորցնելով) մեկ, երկու, երբեմն մի քանի բաղադրիչ-աստղ, դառնում են ավելի փոքր բազմակիության դինամիկորեն կայուն բազմաստղ: Մինչդեռ դինամիկորեն կայուն սովորական տիպի բազմաստղերը երկար ժամանակ գոյատևում են: Դրա հետևանքով դինամիկորեն կայուն բազմաստղերի թիվը Գալակտիկայի ընդհանուր աստղային դաշտում ժամանակի ընթացքում աստիճանաբար աճում է, հատկապես, մասնակիորեն քայքայվող Տրապեցիայի տիպի բազմաստղերի հաշվին: Ուստի, բնականաբար, ներկայումս գոյություն ունեցող բազմաստղերի մեջ շատ մեծ է բազմաստղերի հարաբերական թիվը:

Վերջին տարիներս ստացվել են մի շարք նոր արդյունքներ, որոնք նույնպես վկայում են Տրապեցիայի տիպի բազմաստղերի դինամիկական անկայունության և, հետևաբար, երիտասարդության մասին: Նշենք նրանցից մի քանիսը:

1. Բյուրականի և Աբասթումանի աստղադիտարաններում հայտնաբերվել են մեծ թվով Տրապեցիայի տիպի բազմաստղեր, որոնք կազմված են շատ երիտասարդ և անկայուն, այսպես կոչված T Ցուլի տիպի աստղերից ու նրանց հարակից օբյեկտներից:

2. Երկնակամարում աստղերի շարժումների ուսումնասիրության հիման վրա ցույց է տրվել, որ O—B սպեկտրալ դասերի աստղեր պարունակող մի քանի Տրապեցիայի տիպի բազմաստղերի մոտ բաղադրիչ աստղերն իրարից ժամանակի ընթացքում հեռանում են:

3. Տրապեցիայի տիպի բազմաստղերի դինամիկական էվոլյուցիայի ուսումնասիրությունը՝ հաշվիչ մեքենայի օգնությամբ, ցույց է տվել, որ նույնիսկ բացասական լրիվ էներգիայի դեպքում այդպիսի համակարգերը պետք է քայքայվեն լրիվ կամ մասնակիորեն, ընդամենը մի քանի միլիոն տարում:

Այսպիսով, աստղերի դիտվող շարժումները, տարբեր բազմակիության համակարգերում, պարունակում են որոշակի տեղեկություններ աստղերի առաջացման և է-

վոլյուցիայի մասին: Ուստի նրանց անմիջական դիտումներն ու ուսումնասիրությունը մեծ նշանակություն ունեն նաև էվոլյուցիոն հետազոտությունների համար:

Մասնավորապես, եթե ենթադրենք, որ բոլոր աստղերը ծնվում են որպես Տրապեցիայի տիպի բազմաստղերի բաղադրիչներ, ապա, հաշվի առնելով դինամիկական տեսակետից **անկայուն** այդ բազմաստղերի մասնակի կամ լրիվ քայքայման տարբեր դեպքերի հնարավոր հետեվանքները, կարելի է հաշվել թե Տրապեցիայի տիպի բազմաստղերում ծնված աստղերի ո՛ր մասն է Գալակտիկայի ընդհանուր աստղային դաշտ մտնում որպես միայնակ կամ որպես տարբեր բազմակիության (կրկնակի, եռակի և ավելի բարձր), դինամիկական տեսակետից **կայուն** համակարգերի անդամներ: Այդ հաշվումների արդյունքների համեմատությունը Գալակտիկայում աստղերի ըստ բազմակիության դիտվող բաշխման հետ հնարավորություն կընձեռի ստանալու կարևոր եզրակացություններ աստղառաջացման պրոցեսի բնույթի վերաբերյալ:

Դժբախտաբար, աստղերի շարժումների ուսումնասիրությունը, դիտվող շարժումների փոքրության պատճառով, կապված է մեծ դժվարությունների հետ: Օրինակ, աստղերի երկնակամարում դիտվող շարժումները մեծ մասամբ (բավականաչափ հեռու աստղերի համար) չափման սխալներից ավելի փոքր են: Այդ դժվարությունները հաղթահարելու համար, մասնավորապես, պահանջվում են դիտման ժամանակաշրջանների շատ մեծ տարբերություն (հարյուր և ավելի տարիներ) և, հատկապես, չափումների նոր, ավելի ճշգրիտ մեթոդների կիրառություն: Այս վերջին նպատակի իրագործման համար ներկայումս ծրագրվում է արձակել հատուկ սարքավորումներով զինված արբանյակներ, որոնք հնարավորություն կտան աստղերի երկնակամարում դիտվող շարժումները չափելու Երկրի մթնոլորտի խանգարող ազդեցությունից զերծ պայմաններում, զգալիորեն բարձրացնելու չափումների ճշտությունը:

Անհրաժեշտ է ավելացնել, որ աստղերի «անկանոն» շարժումները, գրեթե բոլոր դեպքերում, կապված են աստղերի ու աստղային համակարգերի էվոլյուցիայի վաղ փուլերի հետ: Հետևաբար, նրանց ուսումնասիրությունը մեծ նշանակություն ունի, առաջին հերթին, աստղային էվոլյուցիայի վաղ փուլերի բնույթի բացահայտման համար:

Այդ առնչությամբ հարկ է նշել, որ աստղերի «անկանոն» շարժումների ուսումնասիրության արդյունքներն արդեն հիմք են տալիս եզրակացնելու, որ էվոլյուցիայի վաղ փուլերում տիեզերական նյութի զարգացման՝ **դիտվող** ուղղությունը հակասության մեջ է գտնվում մինչև աստղասփյուռների հայտնագործումը գիտության մեջ անվերապահորեն **ընդունված** ուղղության հետ:

Բանն այն է, որ աստղերի դիտվող «անկանոն» շարժումները, օրինակ, աստղասփյուռներում ու Տրապեցիայի տիպի բազմաստղերում, հանգեցնում են նյութի աստիճանական նվազման, այսինքն՝ համապատասխանում են նյութի ավելի խիտ վիճակներից դեպի ավելի նոսր վիճակները կատարվող անցումներին: Մինչդեռ, ընդունված տեսակետի համաձայն, աստղերի առաջացումը հետևանք է նոսր նյութի խտացման, այսինքն՝ պետք է դիտվեր զարգացման հակառակ ուղղությունը: Այդ տեսակետն է ընկած աստղառաջացման պրոբլեմին նվիրված ժամանակակից գրեթե բոլոր տեսական հետազոտությունների հիմքում:

Զարգացման վաղ փուլերում գտնվող աստղերի «անկանոն» շարժումներից բխող, տիեզերական նյութի խիտ վիճակներից դեպի նոսր վիճակները կատարվող անցումների վերաբերյալ նոր պատկերացման օգտին լուրջ փաստարկներ են երիտասարդ աստղերի ֆիզիկական ուսումնասիրության արդյունքները: Դրանք համոզիչ կերպով ցույց են տալիս, որ երիտասարդ աստղերից ժամանակ առ ժամանակ տեղի են ունենում նյութի զգալի զանգվածների արտավիժումներ, ժայթքումներ, որոշ դեպքերում նյութի անընդհատ նշանակալից արտահոսք, որի հետևանքով նրանց շուրջն առաջանում են գազափոշային թաղանթներ: Ծնվում են նոր գազափոշային միգամածություններ:

Աստղերի առաջացման ու էվոլյուցիայի հարցերի հետագա ուսումնասիրությունը պահանջում է երիտասարդ աստղերի ու աստղային համակարգերի բազմակողմանի հետազոտություններ՝ երկնային մարմինների երկրային և արտամթնոլորտային դիտումների հիման վրա: Մասնավորապես, ինչպես արդեն տեսանք, այդ տեսակետից կարևոր նշանակություն ունի նրանց տարածական շարժումների բազմակողմանի հետազոտությունը:



# ՎԱՐԴԵՆԻԿԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

## ԳՅՈՒՂԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

...Վարդենիկում, հանրապետության խոշորագույն գյուղերից մեկում, ամեն տարի 250-ից ավելի երեխա է ծնվում, ու հետզհետե սեղմվում են երեք միջնակարգ դպրոցների պատերը: Չեն բավականացնում նաև հերթափոխային միջնակարգ դպրոցն ու պրոֆտեխուսումնարանի մասնաճյուղը: Այժմ կառուցվում է դպրոցական նոր շենք՝ 1.143 աշակերտական տեղով: Դրա շահագործմամբ բոլոր դպրոցները կանցնեն մեկ հերթի:

Ծանապարհը գյուղ է մտնում՝ վերածվելով լայնահուն փողոց-ծառուղու: Առաջինը մեզ դիմավորում են երեխաների խմբերը, որոնք ճնճղուկների երամի պես աշխույժ ճռվողում են: Սովխոզի դիրեկտոր Սանասար Խաչատրյանը, որ գոհունակությամբ պատմում էր իրենց արտադրական ու սոցիալական նվաճումների մասին, երեխաներին տեսնելիս՝ պայծառ ժպտում ու շիկնում է ներքին հպարտությունից.

— Ահա մեր ամենամեծ հարստությունը և գյուղի խոստումնալից ապագան:

Գյուղը հիմնադրվել է 1829-ին և մինչև 1965-ը տների քանակը հասել է 860-ի:

— Ի՞նչ տներ, հողաշեն կացարաններ էին, բոլորը քանդեցինք, որ մեր որդիների ու թոռների երեսին ամոթով չնայենք,— ասում է յոթանասունհինգամյա Լևոն Նիկողոսյանը:

Նա մեկն է այն վետերաններից, ովքեր, նախնիներից ժառանգություն ստանալով խարխուլ տներով այդ անշուք ծննդավայրը, փոխարենը նոր սերնդին են հանձնում մի քաղաքատիպ բնակավայր: Կոմունիստ է 1937-ից: Բրիգադավար է եղել, մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին, ապա վերադարձել ու շարունակել նույն գործը: Մինչև օրս էլ ղեկավարում է այգեգործական բրիգադը: Պապական հին տունը քանդել, փոխարենը կառուցել է նորը՝ երկհարկանի, վեց-յոթ սենյակով, բոլոր հարմարություններով: Բակից մաքրել է աթարի վերջին հետքերը, որովհետև տանը բոցկլտում է բնական գազի օջախը, բակում տեղադրել է ջրածորակ, տանը՝ հեռախոս:

— Տնտեսության նյութական բազան հզորանում էր,— ասում է սովխոզի դիրեկտոր Ս. Խաչատրյանը,— կյանքն առաջ էր գնում, մեր բազմանդամ ընտանիքներում էլ երեխաները մեծանում էին, ամուսնանում, բայց ապրելու տեղ չկար: Քաղաքներում տեսնում էին բարեկեցիկ կյանքը և հիասթափվում հայրական մութ, հողաշեն ու խարխուլ տներից: Ու շատերը լքում էին հարազատ ծննդավայրը...

Սանասար Խաչատրյանը երկար տարիներ կոլտնտեսության վարչության նախագահն է եղել: Ինքը և տնտեսությունը նույն տարում արժանացել են Լենինի շքանշանի, հետո կոլտնտեսությունը դարձել է սովխոզ, ինքը՝ դիրեկտոր: Փորձով համոզվել է, որ եթե գործը լավ կազմակերպվի, և բոլորը սրտացավ լինեն հարազատ գյուղի, տնտեսության ճակատագրի նկատմամբ, ապա ինը հազար բնակիչ ունեցող Վարդենիկը կարող է լավագույն օրինակ ծառայել շրջանի գյուղերի ու տնտեսությունների համար: Գյուղի հարյուրից ավելի կոմունիստներն էլ դրան էին ձգտում: Հաշվում էին եկամուտները, տաք բանավիճում կուսակցական ժողովներում, մեղադրում կամ պաշտպանում գյուղից հեռացող երիտասարդ ընտանիքներին: Վերջապես նրանց բազմաթիվ ահազանգերից հետո կազմվեց գյուղի հատակագիծը՝ քառանկյուն փողոցներով, տնամերձ հողամասերով, մշակույթի ապագա օջախներով:

Հետո հիմնովին քանդեցին անցած 130 տարում կառուցած բոլոր 860 հողաշեն

կացարանները՝ չթողնելով նույնիսկ թանգարանային մի նմուշ, փոխարենը կառուցեցին 1.610 քարաշեն տուն, շատերը՝ երկու-երեք հարկանի: Անցկացրին երեսունհինգ կիլոմետր ներքին ջրատար և փողոցներում տեղադրեցին 250 ծորակ, կառուցեցին ավտոմատ հեռախոսակայան և հեռախոսներ տեղադրեցին հազար բնակարանում, գյուղ հասցրին բնական գազը, որից արդեն օգտվում է 700 ընտանիք: Մեկ-երկու տարի ևս, ու գազօջախներ կտեղադրվեն բոլոր տներում: Մեկ ակումբը քիչ էր Վարդենիկի համար, կառուցել են նաև մշակույթի պալատ, որն ունի 800 տեղանոց դահլիճ, գրադարան-ընթերցարան, զանազան խաղասենյակներ: Մշակույթի պալատում գործում են ժողովրդական և ազգագրական անսամբլներ:

Կուսբյուրոյի քարտուղար Հրանտ Մովսիսյանը և գյուղսովետի գործկոմի նախագահ Անդրանիկ Հայրապետյանը թվարկում են նորակառույցները: Կենցաղի տուն՝ կոշիկի նորոգման, կարի անհատական պատվերների արհեստանոցներով, լուսանկարչական կետերով, վարսավիրանոցով, կենցաղային իրերի նորոգման մեխանիկական արտադրամասով, նոր խանութներ, հացի փուռ: Հենց միայն կաթնապրանքային ֆերման մի սովորական գյուղի չափ է: Յոթ-ութ երեխան այստեղ միջին ընտանիքի չափանիշն է: Հաճախ են հարսանիքներ լինում, նոր ընտանիքներ ստեղծվում, նոր տներ կառուցվում, ու Վարդենիկը շարունակում է իր թևերը տարածել դեպի Վարդենիսի լեռնաճյուղերի փեշերն ու կապուտաչ Սևանի ափերը: Վարդենիկը տարի առ տարի ծավալվում, ահագնանում է...

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ԱՌԱՋԱՎՈՐ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

Անցած տարի վարդենիկցիները շնորհավորում էին միմյանց նոր հաղթանակի առթիվ. 1983—84 թթ. ձմռան ժամանակաշրջանում անասնապահական մթերքների արտադրության ավելացման ասպարեզում ձեռք բերած արդյունքներով տնտեսությունը հաղթող էր ճանաչվել սոցմրցությունում և արժանացել ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի դիպլոմին: Կաթնապրանքային ֆերման քանիցս նվաճել է նաև կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը:

— Այդ պարգևները, իհարկե,— ասում է սովխոզի դիրեկտոր Ս. Խաչատրյանը,— առաջիկայում նույնպես կպահենք մեր ձեռքում, բայց ահա աշնանամուտին ծանր կացություն էր ստեղծվել: Մեկ շաբաթ էր՝ անձրևը չէր ընդհատվում, իսկ հացահատիկից 400 հեկտարի բերքը դեռ չէր հավաքվել, լրիվ չէր ավարտվել խոտհունձը, դանդաղ էին ընթանում ծխախոտի բերքահավաքը, աշնանացանը, մինչդեռ դրանք պետք է ավարտվեին, որպեսզի սկսեինք ամենածանր գործը՝ 92 հեկտար կարտոֆիլի բերքահավաքը: Ցայլաղներում էլ սկսվել էին ցրտերը, պետք էր մոտ տասներկու հազար գլուխ մանր ու խոշոր եղջերավոր անասուններ փոխադրեինք մսուրային պահվածքի... շուրջ ութ ամիս, որքա՜ն կեր է պետք: Իսկ ի՞նչ գնով ենք աճեցրել անցած տարվա բերքը:

Գարնան դաշտային աշխատանքներում ընդգրկվել էր ողջ Վարդենիկը և երաշխիքներ ստեղծել տնտեսության պատմության մեջ ամենաբարձր բերք ստանալու համար: Սակայն մինչև հունիս տևած սառնամանիքները և դրանից անմիջապես հետո սկսված երկարատև երաշտը ի չիք դարձրին հողի աշխատավորի հույսերը: Ծերունիներն ասում են, որ չեն հիշում այդպիսի անբարենպաստ տարի: Մեկուկես տարվա կերապաշար էին ակնկալում, բայց ահա պետք է ձախողվեր նույնիսկ պլանների կատարումը: Սկսվեց երկրագործի համառ ու լարված աշխատանքը: Բնության տարերքի դեմ պայքարը մասսայական բնույթ էր կրում, առաջին շարքերում կոմունիստներն էին: Հանրային հոտի համար կեր կուտակելու հարցը դարձավ կուսկազմակերպության քննարկման առարկա: Խոսքին հետևեց գործը. պարարտացվեցին խոտհարքները, մեքենահարմար տարածություններ ստեղծելու նպատակով քարերից մաքրվեցին բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները, լավ կազմակերպվեցին հացահատիկի, ծխախոտի, կարտոֆիլի ցանքադաշտերի, այգիների մշակության բոլոր աշխատանքները: Եվ ահա պարզվեց, որ այդպիսի դժվարություններով աճեցրած բերքի հավաքումը ավելի դժվար պետք է լինի:

Սևանի ավազանում եղանակներն այդպես եղել են, այդպես էլ կլինեն և, թվում է. ոչ ոքի չի կարելի հանդիմանել ցածր բերքի կամ կորուստների համար: Վարդենիկի կոմունիստները գտել են միակ ելքը՝ դա կազմակերպված աշխատանքն է և համառ պայքարը տարերքի հետևանքները նվազեցնելու համար: Եվ նրանք հասնում են իրենց նպատակին: Ընթացիկ հնգամյակի տարիներին բոլոր ճյուղերը գերակատարել են պլանները: Ինչպե՞ս էր այդ իրականացվել: Թվարկենք մի քանի օրինակ:

1982 թ. գարնանն արդեն սածիլել էին ծխախոտի 105 հեկտար պլանտացիաները, երբ կարկուտ տեղաց, ու սածիլներից ոչ մի հետք չմնաց: Այդ հարցը դարձավ կուսբյուրոյի քննարկման առարկա: Բրիգադավարներն ու մասնագետները ստացան կոնկրետ հանձնարարականներ: Կոմունիստ բրիգադավարներ Լազար Զիրոյանը, Խաչիկ Միլիտոնյանը, Ավետիք Մինասյանը, Սամվել Գասպարյանը և Աշոտ Բադալյանը մոբիլիզացրին իրենց ղեկավարած կոլեկտիվների անդամներին, նորից կազմակերպեցին դաշտի մշակումը, սածիլումը:

Այստեղ սովորաբար արևոտ օրերի պակասության պատճառով բույսերը դանդաղ են աճում, և ծխախոտի բերքի մի մասը մնում է ուշ աշնան ձյուների տակ: Իսկ այս անգամ ուշացան երկրորդ սածիլման պատճառով: Ուստի բրիգադավարներն ուժեղացրին պլանտացիաների խնամքը, ոռոգումը, լավ կազմակերպեցին մշակության մյուս գործերը և հենց այդ նույն տարում, պլանավորված 26-ի փոխարեն, հեկտարից ստացան՝ 30 ցենտներ ծխախոտի հումք: Արդյունքը ոգևորեց, տարերքի դեմ մարդկանց փորձը հաջողությամբ պսակվեց: Եվ ահա հաջորդ տարի՝ 1983-ի ամռանը, կարկտահարվեց փարթամորեն աճած կարտոֆիլը: Նորից ցանելու համար արդեն ուշ էր: Բրիգադավարները, ինչպես նաև փորձադաշտի դիրեկտոր, կոմունիստ Ազատ Հազեյանը, հիմնական ուշադրությունը կենտրոնացրին ցանքերի ոռոգմանը, ոռոգմանը, փխրեցմանն ու քաղհանին: Հեկտարի բերքատվության պլանը 140 ցենտներ էր, բայց նրանք այդ աշնանն ստացան 180 ցենտներ միջին բերք, իսկ առանձին հեկտարներից՝ մինչև 250 ցենտներ: Տնտեսությունը համախառն արտադրանքի պլանը գերակատարեց 300 տոննայով:

Բնությունը նոր անակնկալ մատուցեց այս տարվա գարնանը: Երկարատև ու ցրտաշունչ ձմռան պատճառով գարնանացանը մարտ ամսվա փոխարեն սկսվեց ապրիլին: Բայց, քանի որ լավ էին նախապատրաստել տեխնիկան, կոնդիցիայի հասցրել սերմացուն, հնարավոր եղավ մինչև մայիսի 20-ը ավարտել հացահատիկային կուլտուրաների ու կարտոֆիլի ցանքը և անմիջապես սկսել ծխախոտի սածիլումը:

Վարդենիկում մեկ-երկու ռեկորդային բերքով առաջնություն չես նվաճի. կգովեն, կպարգևատրեն և վերջ: Կոմունիստ Վաչագան Գասպարյանը հեղինակություն է վայելում երեսունհինգ տարվա արգասավոր գործունեությամբ, միշտ պլանները գերակատարելով ու բարձր բերքի ռեկորդներ սահմանելով: Մասնակցել է մեծ Հայրենականին, 1946—1980 թթ. եղել բրիգադավար: Հացահատիկի պլանը հեկտարից տասնմեկ ցենտներ էր, ինքը եռապատկեց այն: Սակայն ամենաբարձր բերքը ստացավ ծխախոտից, որի համար էլ արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Պատերազմն ու երկար տարիների լարված աշխատանքն իրենց հետևանքներն են թողել նրա առողջության վրա: Վաթսունը լրանալուն պես որոշեցին ուղարկել կենսաթոշակի, չհամաձայնեց: Փոխադրեցին իբր թեթև գործի՝ ընտրեցին տնտեսության արհկոմի նախագահ: Անձնական հանգստի համար ժամանակ չի գտնում, բայց լավ գիտե, թե արհմիութենական կազմակերպության երեք հազար անդամներից ով կարիք ունի առողջարանի կամ հանգստյան տան ուղեգրի, ով է արժանի պարգևների:

— Ի՞նչ կարող եք ասել բարձր բերքի ներկայիս վարպետների մասին,— դիմում եմ Վ. Գասպարյանին:

— Նրանք հիմա շատ են,— ասում է հերոսը,— առաջ ունեինք բարեբեր առանձին դաշտեր, և դրանք ում բաժին էին ընկնում, նա էլ, լավ աշխատելու դեպքում, դառնում էր բարձր բերքի վարպետ: Հիմա փոխվել են պայմանները: Նոր սորտերի արմատավորման, հողի մշակության բարելավման շնորհիվ բարձրացել է նախկինում ամենացածր բերք տվող հարյուրավոր հեկտարների արդյունավետությունը: Բարձր բերքի վարպետներին հիմա մատների վրա չես հաշվի, իսկ տնտեսությունն էլ անցյալ բոլոր տարիների համեմատությամբ հիմա ամենաշատ համախառն բերքն է ստանում: Այդ գործում վճռական դերը պատկանում է մեխանիզատորներին:

— Մեխանիզատորներից առաջինն ուզում եմ նշել կոմունիստ Ասքանազ Հա-

ռությունյանին,— ասում է կուսբյուրոյի քարտուղար Հրանտ Մովսիսյանը,— ոչ միայն նրա համար, որ լավ մասնագետ է, այլև, ամենագլխավորը, լավ կազմակերպիչ է և երեսուն տարի հմտորեն ղեկավարում է մեքենատրակտորային բրիգադը: Պարգևատրվել է շքանշաններով ու մեդալներով, իսկ Սևանի ավազանի շրջանների աշխատավորները մեկ նստաշրջան նրան ընտրել են ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ:

Տնտեսությունն այսօր ունի 31 տրակտոր, 40 ավտոմեքենա, կոմբայններ, գյուղատնտեսական տասնյակ այլ մեքենաներ: Ա. Հարությունյանի ղեկավարությամբ տարեցտարի մեքենայացվել են 2.330 հեկտարի ցանքը, մշակությունը, բերքահավաքն ու բերքի փոխադրումը և հատկապես այնպիսի ծանր աշխատանք, ինչպիսին կարտոֆիլի բերքահավաքն է: Այստեղ կա մեխանիզատորների մի ստվար ջոկատ: Նրանց համար լավագույն օրինակ են ծառայում կոմունիստ տրակտորիստներ Լենիկ Ղումաշյանը, Խաչիկ Հովհաննիսյանը և ուրիշներ:

Տասնհինգ տարվա մեխանիզատոր է կոմունիստ Ալբերտ Աղեկյանը: Ամռանը կոմբայնով հնձում է 200—250 հեկտար հացահատիկ, իսկ աշնանից մինչև գարուն ավտոմեքենայով սպասարկում է ֆերմային, որտեղ ավելի լարված է աշխատանքը. կեր է տեղափոխում, տարվա միջին ամսական վաստակն էլ՝ 250 ռուբլի, իսկ ֆերմայում աշխատելիս՝ 300—370 ռուբլի:

Տնտեսության հաջողություններում մեխանիզատորների ներդրումը գնահատելու համար հարկ չկա հեռուն գնալ: Միայն անցած տարվա գարնանային ցրտահարությունների, ամռան երաշտի և բերքահավաքի ընթացքում, գրեթե չդադարող անձրևների ժամանակ նրանց գործադրած ջանքերը, իրոք, հերոսական էին: Մեխանիզատորներին զորավիգ էին գյուղի բոլոր աշխատունակ մարդիկ: Արդյունքն էլ գոհացուցիչ էր. 3.400 տոննա խոտ և կատարվեց պլանը, պատրաստվեց 5.800 տոննա սիլոս ու սենաժ՝ պլանից 700 տոննայով ավելի:

Սպասելիքները հատկապես արդարացրեց կարտոֆիլը. միջին բերքատվությունը, 140-ի փոխարեն, կազմեց 200 ցենտներ: Դա հնարավորություն ընձեռեց չորս տարում կատարելու այդ կուլտուրայի արտադրության հնգամյա պլանը: Իսկ պետվաճառքի հնգամյա ծրագիրը 500 տոննայով գերակատարելու մասին զեկույց էին տվել դեռևս 1983-ին:

Երիտասարդության արտահոսքը դադարել է: Կոմունիստները, որ տարիներ շարունակ պայքարել են դրա համար, իրենց նպատակին հասել են գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, գյուղի կառուցապատման, բարեկարգման, մարդկանց համար աշխատանքի ու հանգստի լավ պայմաններ ստեղծելու շնորհիվ: Այժմ տնտեսության կոմերիտական կազմակերպությունն ունի 850 անդամ, և ԼԿԵՄ կոմիտեն գործում է շրջկոմի իրավունքով:

— Կոմերիտականներն ու երիտասարդներն ընդգրկված են արտադրության բոլոր տեղամասերում,— ասում է ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Ժորա Մարտիրոսյանը,— նրանք կատարում են բոլոր աշխատանքների քառասուն, իսկ կերի կուտակման՝ վաթսուն տոկոսը:

Կոմերիտական կազմակերպությունը ներառնում է քառասունվեց տեղամասային կազմակերպություն, ընդ որում տասնվեցը՝ սկզբնականի իրավունքով: Մեծ մասի քարտուղարները երիտասարդ կոմունիստներ են, որոնց միջոցով էլ իրականացվում է երիտասարդության կուսակցական ղեկավարությունը: Շատ են արտադրության երիտասարդ առաջավորները: Լավագույններն ընդունվում են ՍՄԿԿ շարքերը: Վերջին երեք-չորս տարում կուսակցությանը զինվորագրվել են շարքային աշխատողներ Ատոմ Պետրոսյանը, Արսեն Զիրոյանը, Լարիսա Մանուկյանը, Անահիտ Պետրոսյանը և ուրիշներ: Ամենադժվարին գործերի զգալի մասը, ինչպես պարզվում է, կատարում են երիտասարդները: Երիտասարդներն էլ իրենց հետ բերում են նորը, և հին Վարդենիկն իր սովորույթներով մնում է միշտ ավանդապահ ու ժամանակակից:

## ՎՃՌԱԿԱՆ ՇՐՋԱԴԱՐՁ

Երբ գալիս էր աշունը, և հանրային հոտը փոխադրվում էր մսուրային պահվածքի, անասնապահների համար սկսվում էին ծանր օրեր ու գիշերներ, և երանելի հուշ էր դառնում յայլաղների հովվերգությունը:

Ֆերման չէր ձգում մարդկանց: Ավելի քան յոթ-ութ ամիս տևող ձմռանը դժվար



էր շուրջ տասը հազար ոչխար և մոտ 2.700 գլուխ տավար պահել ու խնամել հին գոմերում, որտեղ գրեթե ոչ մի աշխատանք մեքենայացված չէր: Նույնիսկ այսպիսի պայմաններում Վարդենիկի անասնապահությունը, Մարտունու շրջանի մյուս տնտեսությունների համեմատությամբ, երբեք ետ մնացող չի համարվել, սակայն դրան հասնում էին լարված աշխատանքով: Պետք էր ոչ թե համեմատվել ետ մնացողների հետ, այլ որոնել հեռանկարներ, լայն հայացքով նայել շուրջը, տեսնել, թե ինչ է կատարվում շրջանի սահմաններից դուրս, բեկում մտցնել աշխատանքում, ապահովել անասնապահության ինտենսիվ զարգացումը:

Թերթում եմ յոթանասունական թվականների վերջերի կուսակցական ժողովների արձանագրությունները: Սովխոզի դիրեկտոր Ս. Խաչատրյանը, կուսբյուրոյի քարտուղար Հ. Մովսիսյանը, ֆերմայի բրիգադավար Թ. Մինասյանը, երեսուն տարվա անասնապահ Մ. Հովհաննիսյանը, բրիգադավարներ Լ. Զիրոյանը, Ա. Մինասյանը և մյուս կոմունիստներն իրենց ելույթներում բարձրացրել են անասնապահական ժամանակակից շենքերի կառուցման, կերի բազայի ամրապնդման, ջրամատակարարման ապահովման, անասունների ցեղային կազմի բարելավման, նախրի մեջ կովերի գլխաքանակի ավելացման և այլ հարցեր:

— Մենք երբեք դժգոհ չենք եղել մեր անասնապահներից,— ասում է Ս. Խաչատրյանը,— սակայն նրանց աշխատանքի նախկին ձևերը, քարացած ավանդույթները այլևս չէին բավարարում ժամանակի պահանջները, ուստի պետք էր արմատական շրջադարձ, բեկում: Նույնիսկ բավարար պայմաններ ստեղծելուց հետո էլ հաճախ էր պատահում, որ ֆերման կանգնում էր դժվարությունների առջև, նվազում էր կաթի ու մսի արտադրությունը: Մինչդեռ ուսումնասիրություններից պարզվում էր, որ կարելի է ավելի բարձր արդյունքներ ունենալ: Ուստի, պետք էր փոխել նաև աշխատանքի կազմակերպման եղանակները: Կոմունիստների մեջ այս անգամ արդեն ծագում էր կադրերի հարցը. ինչպե՞ս է աշխատում յուրաքանչյուր անասնապահ, արդյոք ամեն մեկն իր տեղո՞ւմ է:

Անասնապահության բնագավառում շրջադարձ կատարելու առաջին արձագանքողներից էր կոմունիստ Նորիկ Աբրոյանը: Նա ցանկություն հայտնեց գնալ տնտեսության ամենադժվար տեղամասը՝ ֆերմա: Կուսբյուրոն և սովխոզի դիրեկցիան ընդառաջեցին նրա ցանկությանը, և Ն. Աբրոյանը նշանակվեց կաթնապրանքային ֆերմայի վարիչ: Բոլոր տվյալները նրա օգտին էին խոսում. բարձրագույն կրթությամբ մասնագետ է, տասնհինգ տարի դաշտավարական բրիգադ է ղեկավարել, գործը լավ կազմակերպել ու միշտ բարձր բերք ստացել, արժանացել Լենինի ու Աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանների: Ն. Աբրոյանն անփոխարինելի է եղել բրիգադավարի պաշտոնում, չէին կասկածում, որ այդպիսին կլինի նաև ֆերմայում: Դա ընթացիկ հնգամյակի սկզբին էր: Դրանից հետո անցած չորս տարվա գրեթե բոլոր եռամսյակներում նրա ղեկավարած ֆերմայի կոլեկտիվին է շնորհվել կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը: Արդյունքներն այսպիսին են. 1981 թվականին ինտենսիվ եղանակով արտադրվել է 195 տոննա միս, 1982-ին՝ 240, 1983-ին՝ 265,8, իսկ անցած տարի՝ 270 տոննա: Չորս տարվա աճը՝ 75 տոննա: Կաթի արտադրությունը 1981 թվականի ինը հարյուրից 1983-ին հասել է 1.161 տոննայի: 1984-ին դրան ավելացավ ևս 100 տոննա: Վերելքը շարունակվում է: Այս տարվա դժվարին ձմռան պայմաններում նույնպես կոլեկտիվն իր խնդիրները հաջողությամբ լուծեց և առաջին եռամսյակում ձեռք բերած բարձր արդյունքների համար արժանացավ ՀԿԿ Մարտունու շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Այդ հաջողությունները ձեռք են բերվել ստեղծված լավագույն պայմանների, դիրեկցիայի և կուսկոմիտեի խելամիտ ղեկավարման, անասնապահների անձնվեր աշխատանքի շնորհիվ: Վերջիններիս շարքերը համալրվում են երիտասարդներով, բայց հիմնական կորիզը կազմում են փորձառու, աշխատանքում կոփված վետերանները: Կոմունիստ Թոչուն Մինասյանը նոր պայմաններում հիմնովին վերակառուցել է իր ղեկավարած բրիգադի գործերը: Երեսուն տարվա հորթապահ, կոմունիստ Միրզո Հովհաննիսյանն արդեն կենսաթոշակառու է, բայց շարունակում է մնալ ֆերմայում: Աշխատատար մի շարք գործողությունների մեքենայացումը նախկինում ծանր աշխատանքի սովոր անխոնջ անասնապահին հնարավորություն է ընձեռել 40—50 կիլոգրամով բարձրացնել պետական մթերման հանձնվող անասունների միջին կենդանի

քաշը: Իսկ կոմունիստ Սերյոժա Կիրակոսյանը, սահմանված քառասունհինգի փոխարեն խնամում է հարյուրից ավելի հորթ: Անասնապահության զարգացման գործում արժանի ավանդ են ներդնում նաև անկուսակցականները, նախրապաններ Սարուխան Ավետիսյանը, Դալար Պետրոսյանը, Համբարձում Ծահինյանը, կթվորուհիներ Սիրան Ավետիսյանը, Երազիկ Մելոյանը, Նազիկ Պետրոսյանը, Գոհար Հարությունյանը, որոնք ֆերմա տանող ճամփով քայլում են արդեն 15—30 տարի:

Կուսկազմակերպությունն ու սովխոզի դիրեկցիան պատշաճ կերպով են գնահատում արտադրության մարդկանց սոցմրցությունը: Նրանք ամեն կերպ խթանում են բարձրարդյունավետ, անձնվեր աշխատանքը, կարևորում են նյութական ու բարոյական խրախուսանքը: Այդ նպատակով կիրառում են բազմազան միջոցներ: Միայն սկետության բարձրորակ կաթ հանձնելու համար անասնապահներին տարեկան տրվում է ավելի քան 24 հազար ռուբլի լրացուցիչ վարձատրություն: Նրանք պարգևատրվում են իրային թանկարժեք նվերներով, պատվոգրերով, լուսանկարները փակցվում են պատվո տախտակին:

Այժմ, երբ վերհիշում ես կուսակցական ժողովներում արված արժեքավոր առաջարկությունները, ծանոթանում անասնապահության վերջին տարիների ցուցանիշներին, պարզվում է, թե կոմունիստները որքա՜ն հետևողական են եղել իրենց առաջ քաշած հարցերի և ընդունած որոշումների իրականացման գործում: Միայն վերջին չորս տարում կառուցվել են կոմպլեքսային մեքենայացման երեք կովանոց՝ 900 գլխի համար, հորթանոց՝ 250, ոչխարանոցներ՝ 1.500 գլխի համար: Կոմունիստների կոլեկտիվ կամքի արգասիք է նաև կերի բազայի ամրապնդման նպատակով ձեռնարկած միջոցների իրագործումը. նախկինում եղած 150 հեկտարի փոխարեն կերային կուլտուրաների ցանքատարածությունները հասցվել են հազար հեկտարի: Ձեռք է բերվել կովկասյան գոշ և սևաբղետ բարձր մթերատու ցեղի 700 գլուխ երինջ, որով հիմնականում լուծվել է ցեղի բարելավման հարցը: Նախրի մեջ կովերի գլխաքանակը 1982-ի 28 տոկոսի փոխարեն այս տարի կհասնի 40 տոկոսի:

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1984 թ.) պլենումը գյուղատնտեսության հետագա զարգացման խոշոր պրոբլեմներից մեկը համարեց հողօգտագործման արդյունավետ կազմակերպումը, մելիորացիայի և մելիորացված հողերի խելամիտ օգտագործումը: Այդ կապակցությամբ պլենումը խնդիր դրեց, որ կոլտնտեսություններն ու սովխոզները հանդես բերեն նախաձեռնություն, օգտագործեն ներքին հնարավորությունները, ներգրավեն սեփական ուժերն ու միջոցները, որպեսզի գյուղատնտեսական կազմակերպությունների հետ համատեղ անցկացնեն իրենց հողերի մելիորացման աշխատանքները:

Վարդենիկի պետական տնտեսության հաջողություններն էլ հենց ձեռք են բերվել կոմունիստների ակտիվ նախաձեռնությունների շնորհիվ: Միայն վերջին տարիներին այստեղ յուրացվել է մոտ 300 հեկտար նոր հողատարածություն: Դիրեկցիան և կուսկազմակերպությունը, կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան և ՀԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումների որոշումները, միջոցներ ձեռնարկեցին նախկինում յուրացված հողերի արդյունավետությունը բարձրացնելու համար: Խնդիր է դրված ջրհան կայանների միջոցով դաշտերը հասցնել կամ Վարդենիկ գետի, կամ Սևանա լճի ջուրը:

Առջևում ՍՄԿԿ XXVII համագումարն է: Դրան համակողմանիորեն են նախապատրաստվում նաև Վարդենիկի կոմունիստները: Տնտեսության մարդիկ արդեն խոսք են տվել անասնապահական մթերքների և կարտոֆիլի պետվաճառքի հնգամյա պլանը կատարելու մասին: Այժմ պայքար է ծավալվել հնգամյա պլանը տնտեսության բոլոր ճյուղերում գերակատարելու և համագումարը աշխատանքային նոր նվաճումներով դիմավորելու համար:

**Մ. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

---

# ԲՈԼՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՆԵՐԻ ԱԿՏԻՎ ՄԱՍՆԱԿԻՑԸ

ԱԼԱՎԵՐԴՈՒ ՊՂՆՁԱԳՈՐԾՆԵՐԸ փառավոր շատ էջեր են գրել երկրի գունավոր մետալուրգիայի տարեգրության մեջ: Ձեռնարկության մարդկանց աշխատանքային համբավը վաղուց դուրս է եկել հանրապետության սահմաններից: Երկրի առաջավոր ձեռնարկությունների թվում բազմիցս համամիութենական սոցիալիստական մրցության հաղթող է դարձել և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին արժանացել նաև ավելի քան երկու դարի պատմություն ունեցող, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր լեռնամետալուրգիական կոմբինատը: Նրա կոլեկտիվի անունը քանիցս գրանցվել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին:



Մեծ վերելքով են աշխատում այդ խիզախ պղնձագործ մարդիկ՝ հմուտ վետերանները ու աշխատանքային կենսագրությունը նոր միայն հյուսող երիտասարդները: Նրանց ազնիվ տքնանքի արդյունքով են գոյանում պլանների կորագիծը վեր տանող թվերը, նրանց լարված ու քրտնաջան աշխատանքով է ծնունդ առնում դեղին պղինձը:

Ձուլող հսկայական վառարանների հրանցքից հրահեղուկ պղինձը հոսում է շերեփների մեջ: Կռունկավարը մերթ ընդ մերթ բարձրացնում է բազմատոննանոց շերեփը, փոխադրում ու լցնում շիկացած պղինձը կոնվերտորների մեջ: Եվ այդպես ամեն ժամ, ամեն օր, անընդմեջ:

Համաչափ աղմուկով գործող էլեկտրավառարանների մոտ հանդիպում եմ ձուլող Արշակ Ղազարյանին: Մետալուրգի արտահագուստով է, լայնեզր գլխարկով, ավանդական մետաղե ձողը ձեռքին: Դժվար է պատկերացնել, որ նա մեր երկրի բոլոր սասնմեկ հնգամյակների ակտիվ մասնակիցն է և դեռ շարունակում է աշխատել երիտասարդական եռանդով:

Կեսդարյա նվիրված աշխատանքի բեռը ուսերին մի ազնիվ մարդ է Արշակ Ղազարյանը: Սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՍՀՄ պատվավոր մետալուրգ, Հայկական ՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր— ահա նրա երկարատև ու անբասիր աշխատանքի արժանի գնահատականը: Մարդիկ զարմանում են՝ տեսնելով այդ տարեց մարդու եռանդը, դիմացկունությունն ու աշխատասիրությունը: Նրա կյանքը, աշխատանքային սխրանքները հայրենիքին ու ժողովրդին ծառայելու փայլուն օրինակ են:

Ձեռնարկության և Արշակ Ղազարյան մարդու ճակատագրերը նման են իրար: Սովետական Հայաստանը ժառանգեց ավերված հանքերն ու ձուլարանը: Տարիներ պահանջվեցին դրանց վերականգնման

համար: Այդ ծանր շրջանում սովետական կառավարությունը հանքերի ու գործարանի վերականգնման նպատակով հսկայական միջոցներ հատկացրեց: Նորից սկսեցին բոցկլտալ ձուլող վառարանները, նորից սկսեց հոսել Ալավերդու դեղին պղինձը, բայց այս անգամ՝ իսկական տերերի համար: Հենց այդ տարիներին էլ իր նոքարությունը թոթափեց որբացած Արշակ Ղազարյանը:

Մի օր էլ հայրենի Մարց գյուղում իմացան, որ Արշակ Ղազարյանը գործի է ընդունվել Ձորագետի վրա կառուցվող հիդրոէլեկտրակայանի շինարարությունում: Դա առաջին հնգամյակի տարիներին էր: Անչափահաս պատանին աշխատում էր մեծ նվիրվածությամբ, բարեխղճորեն: Ստեղծագործ մարդկանց ջանքերով, հսկայական լեռան միջով ձգվեց թունելը, որից գահավիժող ջրերը շարժման մեջ դրեցին տուրբինները: Գործարկվեց Ձորագէսը:

ԼՈՌՎԱ ՁՈՐՈՒՄ ՀՐԱՑՈՒՔՈՎ վառվեցին Իլյիչի լամպերը, և Արշակ Ղազարյանը, որ շատերի պես ավարտել էր անելիքը, վերադարձավ հայրենի գյուղ, անդամագրվեց նոր ստեղծված կոլտնտեսությանը, ակտիվորեն մասնակցեց նրա ամրապնդման գործին: Ժամանակ առ ժամանակ նա գնում էր շրջկենտրոն ու ամեն անգամ հրապուրված դիտում ձուլողների աշխատանքը: Նրան առանձնապես գրավում էին ձուլող վառարաններից ժայթքող կրակե լեզվակները, որոնք նման էին յուրօրինակ հրավառության, որի հետ, թվում էր, խաղում են պղնձագործ մարդիկ:

Երկրորդ հնգամյակի տարիներին գործարկվեց արտացոլիչ վառարանը: Մշտական աշխատանքի համար կադրեր էին հարկավոր: Գյուղից գործուղվածների հետ էր նաև Արշակ Ղազարյանը: Արտադրամասում շրջապատեցին թիկնեղ ու ջլապինդ երիտասարդին, իմացան նրա ով լինելը: Կյանքում շատ բան տեսած ձուլող վարպետ Անուշավան Խեչիկյանն իր մոտ հրավիրեց Արշակին, ձեռքը դրեց ուսին ու խորհուրդ տվեց.

— Հեշտ չի լինելու, բայց իմացիր, դըժվարությամբ ձեռք բերվածն ավելի բարձր է գնահատվում: Առաջին հերթին նայիր, ընտելացիր...

Դեռ այսօր էլ նրա ականջին հնչում են իր առաջին վարպետի, առաջին դաստիարակի բարի մաղթանքի խոսքերը: Նա երկար դիտում էր ձուլողների լարված աշխատանքը: Դիտում էր, թե ինչպես է հրակայական վառարանում խլթխլթում եռացող պղինձը, ինչպես են մարդիկ ձեռքով փոխադրում մի քանի տասնյակ տոննա բովախառնուրդն ու լցնում վառարանի մեջ: Իսկ երբ անհրաժեշտ էր լինում թողարկել հերթական ձուլվածքը, ձուլողները քրտինք էին թափում հսկայական մուրճով վառարանի հրանցքը բացելու համար:

Արշակ Ղազարյանը սիրեց մետալուրգի մասնագիտությունն ու անբաժան մնաց դրանից: Շուտով նա ավագ գործընկերներին զարմացրեց իր տոկունությամբ ու գործիմացությամբ: Հեշտ ու արագ էր կատարում վարպետի ամեն մի հանձնարարություն, շտապում օգնության հասնել բոլոր նրանց, ովքեր դրա կարիքն զգում էին: Եվ կարճ ժամանակում վաստակեց տարեց ձուլողների սերն ու համակրանքը, նորեկների համար դարձավ հեղինակություն: Հոգատարությամբ շրջապատելով Արշակ Ղազարյանին՝ ավագ ընկերները նրա մեջ տեսնում էին ապագայի լավ մետալուրգին: Այդ էր պատճառը, որ իրենց փորձն ու գիտելիքները անշահախնդիր, անմնացորդ հաղորդում էին նրան:

Այդ օրերին ամբողջ երկրով մեկ հայտնի էր դարձել Դոնբասի ածխահանքի հորատանցող Ալեքսեյ Ստախանովի անունը: Նա քարածուխի հանույթի նորման գերազանցեց 14 անգամ: Նախաձեռնությունն սկիզբ դրեց մասսայական շարժման, որը կոչվեց ստախանովյան: Այն մեծ արագությամբ ծավալվեց երկրով մեկ: Այդ շարժմանը ջերմորեն արձագանքեցին նաև Ալավերդու պղնձագործները: Այստեղ հանդես եկան ստախանովյան շարժման առաջամարտիկները, որոնք բարձրարտադրողական աշխատանքի հիանալի օրինակներ էին տալիս: Ու Արշակ Ղազարյանը նրանց շարքում էր:

Այսօր էլ Արշակ Ղազարյանը մեծ պատկառանքով է հիշում վաստակաշատ մետալուրգներ , Լենինի շքանշանի ասպետներ Իսակ Պապոյանին, Վանո Վերմիշյանին, Անուշավան Անտաշյանին, Անաստաս Խոպչոնոնովին, Կոնստանտին Պիլևին, որոնք ստախանովյան շարժման նախաձեռնողներն էին Ալավերդիում: Այդ մարդիկ, որ իրենց աշխատանքային կենսագրությունն սկսել էին մի կտոր հաց վաստակելու համար, դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին երկրով մեկ տարածեցին հարազատ ձեռնարկության փառքը, շատերին սովորեցրին պղնձագործի մասնագիտությունը: Արշակը հպարտանում էր, որ ինքն էլ այդ հիանալի մարդկանց կոլեկտիվում է, քրտինք է



թափում նրանց կողքին: Շատ անգամ է նա ճերմակահեր վետերաններից լսել այս հնագույն ձեռնարկության անցյալի մասին, իսկ հետագայում ինքն էր պատանիներին ու աղջիկներին պատմում ձուլողների, լեռնագործների հեղափոխական ու աշխատանքային փառավոր անցյալի պատմությունը:

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ծանր օրերին Արշակ Ղազարյանը ևս փափագում էր զենքը ձեռքն առնել ու պաշտպանել հայրենիքը: Սակայն նրան ասացին, որ թիկունքն էլ յուրօրինակ մարտադաշտ է և իր նման մասնագետի կարիքը ձուլարանում ավելի շատ է զգացվում, երկրին թանկարժեք մետաղ է պետք: Մարդիկ զօր ու գիշեր չէին հեռանում ձուլող վառարաններից, աշխատում էին անմնացորդ նվիրումով, նաև՝ ռազմաճակատ մեկնածների փոխարեն, իրենց արժանի ավանդը ներդնում բաղձալի հաղթանակն ապահովելու գործում: Ու նրանց շարքերում հերոսական գործերով աչքի էր ընկնում նաև Արշակը, որն արդեն բավականաչափ փորձ ու հմտություն էր ձեռք բերել:

Հետպատերազմյան տարիներն Ալավերդու մետալուրգների ու քիմիագործների համար լարված աշխատանքի ու վերելքի ժամանակահատված էին: Կոմբինատում գործարկվեցին նոր բաժանմունքներ: Պղնձի ռաֆինացման արտադրամասի ստեղծմամբ ալավերդցիները հնարավորություն ստացան կիրառելու պղնձի արտադրության լրիվ ցիկլը: Այդ շատ անհրաժեշտ մետաղի թողարկումն ավելացնելու նպատակով հարկ եղավ վերակառուցել արտադրությունը, գործարկել նոր կարողություններ ու հզորություններ: Եվ շուտով ձուլող վառարանների ու գործող արտադրամասերի կողքին տեղակայվեցին ու վեր խոյացան նորերը: Եվ այդ ամենը՝ Արշակ Ղազարյանի աչքերի առջև, նրա ակտիվ մասնակցությամբ: Հայրենանվեր, անբասիր աշխատանքի, գունավոր մետալուրգիայի զարգացման գործում ձեռք բերած նշանակալի հաջողությունների համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1961 թ. հունիսի 9-ի հրամանագրով ավագ ձուլող Արշակ Ղազարյանին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Անվանի մետալուրգի սիրտն ուռչում էր հպարտությունից, երբ տեսնում էր, որ ողջ երկիրն է մասնակցում լեռնամետալուրգիական կոմբինատի վերակառուցմանը: Գրեթե բոլոր միութենական հանրապետություններից ստացվեցին շինանյութեր ու տեխնոլոգիական սարքավորումներ: Երկրի տարբեր ծայրամասերից այստեղ ժամանեցին լավագույն կառուցող մասնագետներ: Նրանցից շատերը կոմբինատի վերակառուցման տարիներին փառավոր էջեր գրեցին: Ու անվանի մետալուրգը ճանաչեց շատերին մոտիկից, և շատերը՝ նրան:

Կոմբինատի վերակառուցման տարիներին արտացոլիչ վառարանի փոխարեն կառուցվեց հզոր էլեկտրավառարան: Եվ հին վառարանի ավագ ձուլողին վստահեցին նորի ավագ ձուլողի պարտականությունը, որը ևս նա սկսեց կատարել խղճի մտոք, տիրոջ սրտացավությամբ: Երկրում առաջինն ալավերդցիները կիրառեցին պղնձի խտանյութը կիզելուց հետո նրա հետագա էլեկտրաձուլումը: Մարդիկ համոզվել են, թե ինչպիսի մեծ առավելություն ունի էլեկտրական վառարանը արտացոլիչ վառարանի համեմատությամբ. բարձրացել է մետաղի կորզումը, կրճատվել են կորուստները և, որ ամենագլխավորն է, հեշտացել է աշխատանքը:

Ու տեխնիկական առաջընթացի հետ, տարիների ընթացքում է՛լ ավելի վարպետացան մետալուրգները, նրանց թվում՝ նաև Արշակ Ղազարյանը: Ձեռնարկությունում շարքային ձուլողից հասավ ավագ ձուլողի աստիճանի, դարձավ վարպետ-դաստիարակ: Առաջիններից մեկն արժանացավ կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման: Նրա բազմաթիվ սաներ այսօր աշխատում են այստեղ, իրենց վարպետի օրինակով՝ կոմունիստաբար: Վլադիմիր Սահակյանը կարգվել է ձուլման բաժնի վարպետ, Ազատ Աթիկյանը՝ ավագ ձուլող: Եվ որդիները գնացին հոր ճանապարհով. երբ ավագ որդին՝ Հրաչիկը, ավարտեց միջնակարգ դպրոցը, Արշակ Ղազարյանը նրան տարավ ձուլարան: Հետո դիրեկցիայի գործուղմամբ Հրաչիկը տեխնիկական բարձրագույն կրթություն ստացավ: Իսկ երբ կրտսեր որդին՝ Հովիկը, վերադարձավ զինվորական ծառայությունից, հայրը նրան էլ հասու դարձրեց իր մասնագիտությանը:

Վարպետ-դաստիարակից շատ բան են սովորել հարյուրավոր մետալուրգներ: Բարեխիղճ ու գործին նվիրված այդ մարդու մասին գովեստի շատ խոսքեր կարելի է լսել անվանի ձուլողներ Սեյրան Քոչինյանից, Ազատ Աթիկյանից, Վազգեն Ղուշչյանից, Վլադիմիր Սահակյանից և ուրիշներից: Շատերն են դիմում վարպետին, լսում նրա խորհուրդը: Հիշում եմ. ակամա

մասնակից դարձա ազատազրկումից վերադարձած մի երիտասարդի հետ նրա ունեցած զրույցին:

— Ուզում եմ նորից կոմբինատ գալ, կյանքս նորից սկսել,— վարպետին դիմեց երիտասարդը:

— Կյանքը նորից սկսել հնարավոր չէ, այն կարելի է միայն շարունակել, բայց աշխատիր լավ շարունակել,— խորհուրդ էր տալիս վարպետը:

Կոմբինատում աշխատում են ավելի քան 600 կոմունիստներ: Այդ մեծ ջոկատի անդամներից մեկը Արշակ Ղազարյանն է: Այստեղ է նա զինվորագրվել կուսակցությանն ու արդեն երեսունյոթ տարի պատվով է կրում կոմունիստի վեհ կոչումը: Այն հերթափոխը, որտեղ աշխատում է վարպետը, կարողացել է աշխատաժամանակն առանց պարապուրդի ու խելացի օգտագործելու, ճիշտ տեխնոլոգիա կիրառելու միջոցով կրճատել ձուլման գործընթացի տևողությունը, տալ շատ ու որակյալ արտադրանք: Եվ Արշակ Ղազարյանն իր արժանի նպաստն է բերում այդ ամենին: Ու թեև յոթ տասնամյակը վաղուց է բոլորել և քսան տարի է, ինչ կենսաթոշակի է, սակայն դեռևս շարունակում է աշխատել մեծ ջանասիրությամբ ու նվիրվածությամբ: Երբ նշում էին վարպետի աշխատանքային գործունեության 50-ամյակը, նա ավագ ձուլողի էստաֆետը հանձնեց իր սանին՝ Ժորա Մելիքյանին, իսկ ինքը մնաց որպես ձուլող նույն հերթափոխում:

Ալավերդու պղնձագործները բարեկամական կապերի մեջ են եղբայրական Վրաստանի Զեստաֆոնի քաղաքի գործարանի աշխատողների հետ: Արշակ Ղազարյանն իր հերթին մրցության է հրավիրել այդ ձեռնարկության ավագ ձուլող, սոցիալիստական աշխատանքի հերոս Գրիգորի Նանիթաշվիլուն: Երբեմն մրցակից հերոսները հանդիպում են, մտքեր կիսում, ծանոթանում միմյանց աշխատանքային փորձին՝ արտադրությունն ավելի լավ կազմակերպելու համար:

...ՎԱՌՎՈՒՄ Է ազդանշանային լամպը: Դա նշանակում է, որ էլեկտրական վառարանը աշխատանքային վիճակում է: Հզոր սարքավորումը գործում է չափավոր աղմուկով: Հերոսը կանգնած դիտում է դիտանցքից, ստուգում ձուլվածքի վիճակը: Լարված աշխատում են հերթափոխի տղաները: Հեշտությամբ բացելով վառարանի հրանցքը՝ նրանք թողարկում են հերթական ձուլվածքը: Ծանոթանում եմ հերոսի գործընկերներին՝ ավագ ձուլող Ժորա Մելիքյան, ձուլողներ Սեյրան Քոչինյան, Զավեն Խլոպուզյան, Սարիբեկ Լալայան, Հովիկ Ղազարյան...

— Հովիկն իմ կրտսեր որդին է,— գոհունակությամբ ասում է վարպետը,— արդեն հինգ տարվա ստաժ ունի, համոզված եմ, որ ժամանակին լավ ձուլող կդառնա...

Այդ նույն միտքն արտահայտեցին կոմբինատի կուսկոմիտեի անդամները, երբ ՍՄԿԿ անդամության թեկնածու Հովիկ Արշակի Ղազարյանին ընդունում էին կուսակցության շարքերը որպես անդամ:

Հերոսի աշխատանքային և հասարակական գործունեությունը սերտորեն շաղկապված են: Նա ՀԿԿ Թումանյանի շրջկոմի անդամ է, Ալավերդու քաղաքային սովետի դեպուտատ, մեծ նվիրումով է մասնակցում պլենումներում, ակտիվի ժողովներում, քաղսովետի նստաշրջաններում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, իր բազմամյա հարուստ փորձով նպաստում դրանց լուծմանը: Որպես ժողովրդական դեպուտատ, սիրով է արձագանքում ընտրողների խոսքին, կատարում նրանց պատվիրանները, ակտիվորեն մասնակցում քաղաքի սոցիալական զարգացման ծրագրի իրագործմանը:

Համամիութենական ճանաչում ստացած Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի կոլեկտիվը տասնմեկերորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում լրացուցիչ թողարկել է մի քանի միլիոն ռուբլու արտադրանք: Եվ, որ շատ կարևոր է, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, իջել է արտադրանքի ինքնարժեքը, էապես բարելավվել որակը, խնայվել են զգալի քանակությամբ վառելիքաէներգետիկ ռեսուրսներ: Այդ հաջողություններում իր արժանի ներդրումն ունի նաև սոցիալիստական աշխատանքի հերոս, պետական մրցանակի դափնեկիր, վաստակավոր մետալուրգ Արշակ Ղազարյանը:

ՍՄԿԿ XXVII համագումարին նախապատրաստվելու ժամանակաշրջանը պղնձագործների համար դարձել է նոր հաջողությունների, լուրջ ձեռնարկումների ստուգատես: Կոլեկտիվն ի պատիվ կուսակցության XXVII համագումարի, խոստացել է տարեկան պլանը կատարել ժամկետից 15 օր շուտ և երկրին տալ մի քանի հարյուր տոննա արտապլանային պղինձ:

**Ա. ԴԱՎՈՅԱՆ**
***ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ***



# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ ԱՌՕՐԵԱԿԱՆ ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Առօրեական գիտակցության պրոբլեմն իբրև իմացաբանական երևույթ տեսական հետաքրքրություն է ներկայացնում: Նշենք, որ իմացության երկու հիմնական ձևերի՝ գիտության և, այսպես կոչված, ողջախոհության փոխհարաբերության հարցը առավել արմատական նշանակություն է ստացել գիտական մտածողության զարգացման շրջադարձային փուլերում:

Մեր օրերում ողջախոհության, ավելի ընդհանրացված ձևով՝ առօրեական գիտակցության նկատմամբ հետաքրքրությունն առնչվում է ոչ միայն գիտատեխնիկական հեղափոխության, այլև սոցիալական կյանքում տեղի ունեցող արմատական տեղաշարժերի հետ: Այդ ամենից առաջ վերաբերում է հասարակական կյանքի կոմունիստական վերակառուցման հետ առնչվող մարդկային հարաբերությունների կարգավորումը տարերային վիճակից գիտական ռելսերի վրա տեղափոխելուն: Գիտական ու առօրեական պատկերացումների այս նոր բնագավառն առավել է բարդանում, երբ պրոբլեմի իմացաբանական կողմին գումարվում է գաղափարականը, երբ առօրեական գիտակցությունը դառնում է ժամանակակից գաղափարախոսական պայքարի թատերաբեմերից մեկը:

Առօրեական գիտակցության սոցիալ-գաղափարական ֆենոմենի ուսումնասիրությանն է նվիրված վերջերս «Հայաստան» հրատարակչության լույս ընծայած Մ. Ա. Շահզադեյանի **Առօրեական գիտակցություն*** մենագրությունը: Առօրեական գիտակցության ուսումնասիրությունը զարգացած սոցիալիզմի և ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում՝ հեղինակային նման հարցադրումն արդեն ոչ միայն սկզբունքորեն հնարավոր է դարձնում ուսումնասիրության մեթոդաբանական նպատակամետությունը, այլև անհրաժեշտ պայման է՝ բացահայտելու քննարկվող պրոբլեմի պրակտիկ-կիրառական նշանակությունն արդի պայմաններում:

Բնականաբար, հեղինակի առաջին հոգսն է գտնել ուսումնասիրության օբյեկտի կառուցվածքի, ֆունկցիաների, հասարակական գիտակցության համակարգում գրաված տեղի, նրա սոցիալական կրողի, հասարակականարտադրական պրակտիկայի հետ ունեցած առնչության և նման այլ հարցերի քննությունը:

Հեղինակի լավատեղյակությունը առօրեական գիտակցության վերաբերյալ գոյություն ունեցող գրականությանը, ինչպես նաև շեշտված մեթոդաբանական մոտեցումը, հասարակական գիտակցության մասին մարքսիզմի դասականների հարուստ ժառանգության օգտագործումը տեսական ու փաստական բարենպաստ հնարավորություն են ընձեռել ժամանակակից գիտատեսական մակարդակով քննելու տվյալ պրոբլեմը: Այս իմաստով առավել արդյունավետ է ներկայանում առօրեական գիտակցության մասին գոյություն ունեցող բնութագրությունների և մասնավորապես դրա ու գիտական գիտակցության փոխհարաբերության վերլուծությունը: Հիմնավոր են հեղինակի փաստարկներն այն մասին, որ առօրեական գիտակցությունը ոչ միայն պետք է քննվի որպես սոցիալ-իմացական պրոցես, այլև իր «որոշակի պատմական ձևի մեջ» (էջ 32):

Հեղինակը համակողմանի լուսաբանում է առօրեական գիտակցության տեղը հոգևոր աշխարհի ժամանակակից համակարգում, մասնավորապես՝ գիտության ու գաղափարախոսության հետ ունեցած առնչություններում: Առավել համոզեցուցիչ են առօրեական գիտակցությունը «կենցաղի ոլորտում» սահմանափակելու մասին կարծիքի դեմ ուղղված փաստարկները, կարծիք, որն ըստ էության բացառում է առօրեական գիտակցության ու

*) М. А. Шахзадеян. Обыденное сознание (философско-методологические проблемы исследования повседневного практического сознания масс). Изд. «Айастан», 1984, стр. 182.

գիտական պատկերացումների փոխներթափանցման իմացաբանական հնարավորությունը, ինչպես նաև պրակտիկ հարաբերություններում արտադրական և կենցաղային ոլորտների միջև գոյություն ունեցող ներքին կապը: Նույնքան համոզիչ է հեղինակային տեսակետն այն մասին, որ առօրեական գիտակցությունն անհրաժեշտ փուլ կամ նույնիսկ կողմ է ինչպես հոգևոր աշխարհի ֆիլոգենետիկ, այնպես էլ օնտոգենետիկ զարգացման համար: Նման տեսակետի կարևորությունը շեշտվում է մասնավորապես դիդակտիկական-դաստիարակչական պրակտիկայում, որքանով որ «անհատը նախապես հանդիսանում է իբրև առօրեական գիտակցության կրողը և միայն ուսումնառության ու կրթության ընթացքում է ձեռք բերում գիտական գիտելիքներ» (էջ 67): Գիտական-աշխարհայացքային գիտելիքների հաղորդումը նպատակ ունի առօրեականի հիմքի վրա, ինչպես նաև նրա օգնությամբ մշակել պատկերացումների նոր, գիտական համակարգ: Այսպիսի մոտեցումը միաժամանակ հերքումն է այն կարծիքի, ըստ որի առօրեական գիտակցությունը վերաբերում է միայն անցյալին, այն սոսկ անցյալի մնացուկների, նախապաշարմունքների ու «հարմարավետ» մոլորությունների, ապագայից զուրկ, տրամաբանական թույլ կառուցվածք ունեցող, իր դարն ապրած հոգևոր գոյավորում է՝ հասարակ մահկանացուների շուկայական հոգսերը հոգալու համար:

Պրոբլեմի քննարկման հեղինակի մեթոդաբանական մեկնակետից մեկն էլ այն է, որ ոչ միայն ցույց տրվեն առօրեական ու գիտական պատկերացումների տարբերությունները, այլև նրանց միասնությունը: Հայտնի է, որ միակողմանիորեն բացարձակացված առաջին մոտեցումը արևմտյան մի շարք հետազոտողների մոտ (Պ. Բրիջմեն, Ֆ. Ֆրանկ և ուրիշներ) նույնիսկ հանգեցրել է սոցիալական նոր միջնորմի (ռասայականի, ազգայինի, դասակարգայինի կողքին)՝ ինտելեկտուալ ընտրանու և նրանից անխուսափելիորեն ետ մնացող առօրեական գիտակցության կրողների գաղափարին: Այս կապակցությամբ հեղինակը մի շարք ճշգրտումներ է մտցնում առօրեական և գիտական պատկերացումների համեմատական բնութագրություններում: Նա մասնավորապես ճշգրիտ չի համարում նրանց տարբերությունը փնտրել միայն համակարգայնության և ոչ համակարգայնության շրջանակներում, իրավացիորեն պնդելով, որ և՛ արտացոլման օբյեկտի, և՛ մարդու նպատակաուղղված գործունեության թելադրանքով առօրեական գիտակցությունն անկարող է զուրկ լինել համակարգայնությունից:

Համոզիչ են նաև գիտական և առօրեական պատկերացումների տարբերակման, ինֆորմացիայի պահպանման ու փոխանցման և այլնի վերաբերյալ փաստարկները: Գուցե նույնչափ համոզչականություն չեն բովանդակում առօրեական գիտակցության ու գիտության՝ պրակտիկայի հետ ունեցած առնչության, ինչպես նաև գիտելիքների այդ համակարգերից նոր գիտելիքներ արտածելու վերաբերյալ հեղինակի նշած տարբերությունները (տե՛ս էջ 38—39):

Յուրահատուկ հետաքրքրություն է ներկայացնում սոցիալ-հոգեբանական գոյավորումների հետ առօրեական գիտակցության ունեցած առնչությունների վերլուծությունը: Ուշագրավ և գուցե զարգացման կարոտ է հատկապես այն միտքը, թե կրոնական տարրը պարտադիր չի համարվում առօրեական գիտակցության համար, մի գաղափար, որը, ըստ էության, մեծ դժվարությամբ ճանապարհ է հարթում սկսած դեռևս XVIII դարի ֆրանսիական մատերիալիստներից:

Գրախոսվող ուսումնասիրության տեսական ու պրակտիկ արժեքն առավել ակնհայտ է ներկայանում նրա երկրորդ՝ «Առօրեական գիտակցությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում» գլխում: Այստեղ հեղինակը քննարկման առարկա է դարձնում հասարակական կյանքի կոմունիստական վերակառուցման և ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում առօրեական և գիտական պատկերացումների փոխհարաբերությանը վերաբերող մի շարք առանցքային հարցեր, ինչպիսիք են, օրինակ, գիտակցականի և տարերայինի փոխհարաբերությունը պատմական պրոցեսում, գիտակցականի, այսպես կոչված, երկու մակարդակների պրոբլեմը (գիտակցականություն՝ կապված անհատական շահի ու նպատակադրության հետ և գիտակցականություն, որը հետամտում է հասարակական շահը և խարսխվում համապատասխան նպատակադրության վրա), տարերայնության ու գիտակցականության փոխհարաբերությունը քաղաքական գիտակցության ոլորտում, մասնավորապես բանվորական շարժման մեջ, տարերայինի և գիտակցականի փոխհարաբերությունը բուրժուական և սոցիալիստական հասարակարգերում և այլն: Վերջինիս կապակցությամբ այն միտքն է զարգացվում, որ սոցիալիստական հասարակարգում օբյեկտիվորեն արմատապես նոր պայմաններ են ստեղծվում գիտակցականի և տարերայինի փոխհարաբերության համար:

Ըստ հեղինակի, բոլոր դեպքերում սոցիալիզմի պայմաններում բացառվում է առօրեական գիտակցության և գիտական գաղափարախոսության բևեռացումը: Այստեղ ևս գիտականը ներկայանում է իբրև առաջատար ուժ, չնայած այն բանին, որ առօրեական գիտակցությունը, ինչպես ինֆորմացիա ստանալու նոր աղբյուրներ ու հնարավորություններ ձեռք բերելու, այնպես էլ ազգաբնակչության ամենալայն շրջանների՝ գիտության ու կուլտուրայի հետ առնչվելու շնորհիվ, առավել մեծ մասշտաբներով է «ռացիոնալիզացվում»:

Այս կապակցությամբ միանգամայն արժեքավոր է այն միտքը, որ նույնիսկ զարգացած սոցիալիզմի պայմաններում ոչ միայն գիտական պատկերացումներն են ազդում առօրեական գիտակցության վրա, այլև, ընդհակառակը, աշխատանքի սոցիալիստական բնույթի և սոցիալիստական ապրելակերպի հիմքի վրա կազմավորված առօրեական գիտակցությունն ակտիվորեն ազդում է գիտական պատկերացումների վրա: Այս գաղափարի հետագա զարգացումը, ըստ երևույթին, առավել արդյունավետ կարող է լինել ժամանակակից սոցիալ-քաղաքական և, այսպես կոչված, գլոբալ պրոբլեմներում առօրեական գիտակցության արժեքային ֆունկցիայի բացահայտման և օգտագործման բնագավառներում:

Այն հանգամանքը, որ ոչ մի անհատ իր զարգացման ընթացքում չի կարող շրջանցել առօրեական գիտակցության մակարդակը, որ ամեն մի գիտական գիտելիք այս կամ այն կերպ ելնում է առօրեականից, որ ամեն մի գիտական հիմունքներով կազմակերպված ուսուցում կամ դաստիարակություն ըստ էության նշանակում է վերաուսուցում ու վերադաստիարակություն՝ այս ամենն արդեն վկայում է առօրեական գիտակցության կարևոր նշանակությունը կրթական ու գաղափարախոսական պրոցեսի ղեկավարման համակարգում: Առօրեական պատկերացումների առկայությունը յուրաքանչյուր անհատի աշխարհըմբռնման շրջանակներում վերջինիս կազմավորման պրոցեսի կառավարումն անհնար է դարձնում՝ առանց հաշվի նստելու առօրեական գիտակցության գործոնի հետ: Հեղինակը նույնիսկ կարծիք է հայտնում մարդու «իրական աշխարհայացքային պրոցեսում», «առօրեական» և «տեսական համակարգերի» գոյության մասին: Բնական է, որ նման պայմաններում «առօրեական գիտակցության ինտելեկտուալացումը», նրա շրջանակներից իռացիոնալ տարրերի, կրոնական և այլ կարգի նախապաշարմունքների դուրս մղումը կարևորագույն խնդիրներ են գաղափարախոսական պրոցեսի ղեկավարման գործում: Այդ խնդիրների հաջող լուծման գրավականներ են հասարակության սոցիալիստական կառուցվածքը, որը նվազագույնի է հասցնում (բայց երբեք չի բացառում) տարերայնությունը ինչպես հասարակության զարգացման, այնպես էլ գիտական նվաճումների օգտագործման պրոցեսում: Գուցե հենց այդ օբյեկտիվ հողն է պայմանավորում գիտության այն հսկայական հեղինակությունը սոցիալիզմի պայմաններում, որը հեղինակը վճռական գործոն է համարում առօրեական գիտակցության ռացիոնալիզացման պրոցեսում:

Բոլոր դեպքերում առօրեական գիտակցության բազմաշերտությունը և՛ դետերմինացիայի, և՛ կառուցվածքի ու ֆունկցիաների տեսակետից պահանջում է նույնքան բազմակողմանի մոտեցում, ինչպես նրա էության բացահայտման, այնպես էլ զարգացման պրոցեսը նպատակասլաց կերպով ղեկավարելու համար: Դրա օրինակն է գրախոսվող ուսումնասիրությունը, որը բովանդակում է նաև շարունակվելու, «իրենից դուրս գալու» տրամաբանական միտում: Դա արտահայտվում է ոչ միայն հարցադրումներում, այլև նույնիսկ տերմինոլոգիայում: Այսպես, հեղինակը բավականին ազատորեն է օգտվում բուրժուական, պրոլետարական կամ կրոնական առօրեական գիտակցություն հասկացություններից, որոնց վերլուծությունը, անշուշտ, վերաբերում է առօրեական գիտակցության տեսության զարգացման հետագա փուլերին: Նույնքան տեսական մեկնաբանության կարիք ունեն հարցադրումներն այն մասին, որ իրականության որոշ ոլորտներ անմիջապես անմատչելի են առօրեական գիտակցության համար (օրինակ՝ միկրոաշխարհը) (տե՛ս էջ 54); Պրոբլեմի շեշտված գաղափարական նշանակությունով է պայմանավորված աշխատության վերջին բաժիններում նկատվող այն իրողությունը, որ երբեմն վերլուծություններում քաղաքական պաթոսը ինչ-որ չափով ստվերի տակ է թողնում գիտական կողմը:

Բոլոր դեպքերում վիճարկման ենթակա չէ այն փաստը, որ Մ. Ծահզադեյանի ուսումնասիրությունը հաջողված փորձ է՝ մարքսիստական դասական գրականության ողջ հարստության հենքի վրա նոր, արդի գաղափարախոսական պրոցեսի տեսանկյունից դիտարկել առօրեական գիտակցության մեթոդաբանական պրոբլեմատիկան, ինչպես նաև գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքին այն ծառայեցնելու խնդիրները:

**ՀՐ. ԾԱՔԱՐՅԱՆ**
Պրոֆեսոր

# ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅԱՆ ԿԻԶԱԿԵՏՈՒՄ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐՆ ԵՆ

ԽՈՐՆ ԵՆ ՌՈՒՍ-ՀԱՅԿԱԿԱՆ ազգամիջյան հարաբերությունների արմատները: XI դարում, բյուզանդացիների, ապա թուրք-սելջուկների դեմ մղած երկարատև ազատագրական պայքարից հետո, հայ ժողովուրդը զրկվեց ազգային ինքնուրույնությունից: Ծանր վիճակը, դաժան իրադարձություններն ու անապահով կյանքը ստիպեցին շատ հայերի ապաստան որոնել այլ երկրներում՝ Բուլղարիայում, Ղրիմում, Լեհաստանում... Հայկական գաղութներ ստեղծվեցին Մոսկվայում, Մոզդոկում, Աստրախանում, Նովգորոդում, Պետերբուրգում և այլուր:

Ռուսաստանում ապաստանած հայերի համար պայմանները համեմատաբար ավելի բարենպաստ էին, որոնք հնարավորություն էին տալիս նրանց՝ պահպանելու ազգային ավանդույթները, զարգացնելու հոգևոր մշակույթը, զբաղվելու երկրագործությամբ, արդյունաբերությամբ, առևտրով: Դեռևս XI դարում Ղրիմ և Պոլոլժիե տեղափոխված հայերը հաստատվում էին խոշոր կենտրոններում՝ ակտիվորեն մասնակցելով հասարակական ու մշակութային կյանքին:

Այդ ժամանակներից իսկ ծլարձակած երկու ժողովուրդների բարեկամությունը բարերար ազդեցություն ունեցավ հայ ժողովրդի հետագա առաջընթացի համար:

Ռուս-հայկական պատմական և մշակութային կապերի ծագման ու զարգացման մասին գրվել են շատ ուսումնասիրություններ: Դրանցից մեկն է և բանասիրական գիտությունների թեկնածու Մ. Ամիրխանյանի **Ռուս գեղարվեստական հրապարակախոսությունը Հայաստանի մասին** գիրքը, որը հարուստ նյութերի հիման վրա լրացնում է երկու ժողովուրդների ազգամիջյան հարաբերությունների և նրանց դարավոր բարեկամության պատմությունը:

* М. Амирханян, **Русская художественная публицистика об Армении.** Изд. «Айастан», 1984.

Ամենևին չհավակնելով սպառել այս կարևոր թեմային վերաբերող նյութը՝ հեղինակը ցույց է տվել Հայաստանի պատմական ճակատագրի, սոցիալական վիճակի, մշակույթի ու լուսավորության գործի դրվածքի, մի խոսքով, հայկական ողջ իրականության արտացոլումը ռուսական գրական հրապարակախոսության մեջ:

Գրախոսվող աշխատության մեջ արտացոլված է երկու ժողովուրդների բարեկամության մի մեծ ժամանակաշրջան: XII—XIX, ապա XIX—XX դարերի պատմական աղբյուրները և գեղարվեստական հրապարակախոսությունը բազմակողմանի ներկայացրել են հայ իրականությունը, մեր ժողովրդի նկատմամբ ռուսական գրականագիտության և հրապարակախոսության վերաբերմունքը: Ռուս հեղինակների՝ հայերի մասին վկայակոչած փաստերն ու արտահայտած մտքերն այսօր ևս ընթերցողին համակում են ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալիզմի ոգով:

Աշխատության առաջին գլխում, որն ընդգրկում է XII—XVIII դարերի գրական աղբյուրները, հեղինակը վերլուծում է հայերի մասին ռուսական դրավոր հուշարձաններում պահպանված մի շարք ուշագրավ փաստեր:

Մ. Ամիրխանյանը հայտնաբերել է հարուստ նյութեր, որոնց ամբողջական հատվածներն օգտագործել է սույն աշխատության մեջ: Այս առումով հետաքրքրական են Աբբա դը լա Պորտի **Նամակները** Մերձավոր Արևելքի երկրների մասին, որոնք ֆրանսերենից թարգմանվել են ռուսերեն 1781 թ.: Հեղինակը պատմում է հայ ժողովրդի սովորույթների, զբաղմունքների, կրոնի, կուլտուրայի մասին, նկարագրում բնությունը... Հայերի և Հայաստանի մասին հիշատակություններ են պահպանվել **Սարկավագ Զոսիմայի ճանապարհորդությունը Սուրբ Երկրում 1420 թ., Կազանի թագավորության պատմության մասին (XVI դ.), Վաճառական Վասիլի Պոզդնյակովի 1558—1561 թթ. ճանապարհորդությունը Արևելքի սրբավայրերում, Ֆեդոտ Կոտովի 1623 թ. ճանապարհորդությունը, Վասիլի Յակովլև Գագարայի** վարքը և ուղևորությունը Երուսաղեմ ու Եգիպտոս **(1634—1637)** ճանապարհորդական ակնարկներում և ուղեգրություններում: Հայերի մասին հետաքրքրական տեղեկություններ կան նաև Ն. Կարամզինի **Ռուս ճանապարհորդի նամակներում (1789—1790):** Ուշագրավ է, որ իր **Պատմություն** աշխատությունը գրելիս Կարամզինն օգտվել է Մովսես Խորենացու **Հայոց պատմությունից,** որից հատվածներ էին թարգմանվել ռուսերեն:

Պահպանելով ժամանակագրությունը՝ Մ. Ամիրխանյանը հետևողականորեն հետազոտում է ինչպես վաղ շրջանի, այնպես էլ XVII—XVIII դարերի ռուսական գրական ու պատմական աղբյուրներ, որոնցում հիշատակվում են հայ իրականությանը վերաբերող բազմաթիվ փաստեր:

Գրքի երկրորդ գլխում **(XIX դարի ռուս գեղարվեստական հրապարակախոսությունը Հայաստանի մասին)** հեղինակը քննարկում է տարբեր բնույթի հրապարակախոսական հոդվածներ ու գրական նյութեր, որոնք ճանաչողական կարևոր արժեք ունեն:

Նշելով, որ Ռուսաստանի շատ քաղաքներում կային հայկական կուլտուրայի օջախներ, հեղինակը մասնավորապես անդրադառնում է 1815 թ. Մոսկվայում բացված հայկական Լազարյան ճեմարանին, որը հետագայում վերանվանվում է Արևելյան լեզուների Լազարյան ինստիտուտ: Հայերի համար հիմնված այս բարձրագույն կրթօջախի մուտքը բաց էր և այլազգիների համար:

Հայ ժողովրդի հին շրջանի պատմությանը, նրա կուլտուրային ռուս ընթերցողին ծանոթացնելու առումով հույժ կարևոր նշանակություն ունեցավ Մովսես Խորենացու **Հայոց պատմության** ռուսերեն թարգմանությունը ավագ սարկավագ Հովսեփ Հովհաննեսովի կողմից (1809 թ.):

Հայաստանի մասին ռուսերեն ամեն մի հրապարակում, լինի այն բնագիր թե թարգմանական, վավերագրական թե գեղարվեստական,— գրում է հեղինակը,— հանդիսանում է առաջին հայացքից աննշանելի այն օղակը, որը մեծացնում է ռուս հասարակության ուշադրությունն անինքնող ամենատարբեր ինֆորմացիայի ավելի ու ավելի լայնահուն դարձող ու խորացող ալիքը:

1823 թ. «Вестник Европы» ամսագրում հրապարակվեց ֆրանսերենից թարգմանված հետաքրքրական մի հոդված. **Պատճառներ, որոնք մղում են զբաղվելու հայոց լեզվով:** Առաջին ու թերևս ամենակարևոր պատճառը հեղինակը համարում է այն, որ դա հնարավորություն է ընձեռում կապերի մեջ մտնելու մի ազգի հետ, որին օտար չէ քաղաքացիական բարեկարգությունը, ունի իր գրականությունը, աշխատասեր է, և որ «Հայաստանը մի երկիր է, որտեղ գրում էին անհամեմատ ավելի շատ, քան քրիստոնեական որևէ այլ երկրում»:

Հայաստանի մասին հետաքրքրական հիշատակություններ կան նաև արտասահմանում հրատարակվող ռուսական առաջին հեղափոխական լրագրում՝ «Կոլոկոլում»: Լրագրի խմբագիրը՝ Ալեքսանդր Գերցենը, այդ տեղեկություններն ստացել է իր գաղափարակից ընկերոջից, «...շատ ու շատ ազնիվ ու լավ մարդուց»՝ Միքայել Նալբանդյանից: Հետաքրքրությամբ են կարդացվում և Հ. Այվազովսկուն նվիրված էջերը:

Ռուս գեղարվեստական հրապարակախոսության զարգացման պատմության մեջ այդ նյութերն իրենց թեմատիկայով տեսակարար մեծ կշիռ ունեին: Հայ իրականությունը ռուս գրականության և հրապարակախոսության մեջ մտնում էր ռուսական կյանքի իրադարձություններին սերտորեն հյուսված: Դրանով ևս դրսևորվում է երկու ժողովուրդների հետաքրքրությունների ու ձգտումների ընդհանրությունը: Այստեղ հիշարժան է Մ. Գորկու հայտնած այն միտքը, որ ռուսական հրապարակախոսության նյութերը հարուստ են ու կարևոր ո՛չ միայն հայերի, այլև այլ իրականության և այլ ազգերի համար: Այս առումով ինչպես ռուս գրականությունը, այնպես էլ հրապարակախոսությունը ինտերնացիոնալ բնույթ ունեն:

**XX դարի ռուս գեղարվեստական հրապարակախոսությունը Հայաստանի մասին.** այսպես է կոչվում գրքի երրորդ գլուխը: Դարասկզբին Ռուսաստանում սկսվել էր հեղափոխական շարժում, իսկ հայ ժողովրդի համար դեռևս շարունակվում էր XIX դարում սկսված ողբերգությունը: Աշխարհի առաջադեմ շատ գործիչներ ուղիներ էին որոնում՝ օգնելու հայ ժողովրդին, դուրս բերելու նրան այդ ծանր վիճակից: Փրկության ամենահուսալի և աներեր ձեռքը ռուս ժողովրդինն էր, նրա նշանավոր զավակներինը: Այն ծանր օրերին, երբ ցարական կառավարությունը հրահրում էր ազգամիջյան, թաթար-հայկական ջարդեր,

««Բաքու» լրագրի խմբագրությունը դիմեց Մ. Գորկուն՝ հայտնելու իր վերաբերմունքը այդ անմարդկային անգթությունների նկատմամբ: «Լինելով Կովկասում,— գրել է մեծ հումանիստը,— ամենուր ես տեսնում էի, թե ինչպես համերաշխ ու խաղաղ իրար հետ աշխատում էին վրացին և թաթարն ու հայը, մանկան պես ուրախ ու անմիջական կատակում էին, երգում, ծիծաղում, և այնպես դժվար է հավատալ, որ այդ պարզ, հիանալի մարդիկ բթամտորեն, անիմաստ կերպով ջարդում են իրար՝ ենթարկվելով իրենց գրգռող չար ու սև ուժին»: Դատապարտելով այդ զազրելի դաժանությունը՝ նա զայրույթով գրում էր. «Ո՞վ կարող է ասել, թե ում գլխին կիջնի այն ձեռքը, որ երեկ փշրեց հայի կամ հրեայի գանգը այն բանի համար, որ նրանք իրենց իբրև ազատ մարդ են գիտակցել ռուսից կամ թաթարից ավելի շուտ»: Եվ ապա եզրակացնում է. ժողովուրդների փրկության ճանապարհը մեկն է. «Հարկավոր է միայն, որ Կովկասի ու Ֆինլանդիայի, Լեհաստանի ու Ռուսաստանի բոլոր լավագույն մարդիկ միավորվեն մարտիկ-ընկերների մի ընտանիքում, ազնիվ ու անվախ մարդկանց ջոկատում»,— որովհետև բոլոր ժողովուրդները մի բան են տենչում— ապրել լավ ու խաղաղ...: Ինչպես Մ. Գորկին, այնպես և Յու. Վեսելովսկին, Ս. Գորոդեցկին, Վ. Բրյուսովը, գրականության ու արվեստի քաղաքական ու հասարակական շատ այլ գործիչներ խոշոր դեր խաղացին հոգևոր կյանքի հետագա զարգացման գործում:

Հիրավի Հայաստանը հարազատ է դարձել շատ ու շատ ռուս գրողների ու հրապարակախոսների համար: Նրանք իրենց ստեղծագործություններում բարձրացրել են կյանքի լուրջ և կարևոր պրոբլեմներ, բարոյական եղանակ ստեղծել հայ իրականության շուրջ... Պատահական չէ, որ նրանց արտահայտած մտքերը Հայաստանի ու հայ ժողովրդի մասին այսօր ևս համահունչ են մեր սոցիալիստական իրականությանը:

Մ. Ամիրխանյանի գիրքն ընդգրկում է ռուս գեղարվեստական հրապարակախոսության պատմական երկարատև ու կարևոր ժամանակաշրջան, որը հետաքրքրական է թե՛ գրականագիտության, թե՛ հրապարակախոսության համար:

**Ռ. ԴԱՎԹՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

---



Վերստուգող սրբագրիչ՝ Ջ. Մ. ԱՍԱՏՐՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ **52—99—06**, պատասխանատու քարտուղար՝ **52—99—22**, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ **52—25—43**, էկոնոմիկայի բաժին՝ **52—57—56**, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 53—86—11, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 13.08.1985 թ.: Ստորագրված է տպագրության 5.09.1985 թ.: ՎՖ 05210*
***Ձևաչափ՝ $70 \times 108\ ^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.,***
*Տպաքանակ՝ 16.832: Պատվեր 1872:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
**Типография издательства ЦК КП Армении.**
**Ереван-23, пр. Орджоникидзе, 2.**